

# ՍԱՐԱԼԱՆՋԻՑ ԻՋՆՈՂ ԱՌՈՒՆ

*ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ*

Սարալանջից իջնող առուն
Երազում էր կանաչ գարուն,
Երազում էր ծաղկած հովիտ,
Երազում էր սարի հովիկ,
Երազում էր զուգված աշխարհ,
Բարի արև ու ծաղկած ծառ,
Երազում էր փոքրիկ տղա,
Որ անպայման իր հետ խաղա:
Սարալանջից իջնող առուն
Երազում էր մինչև գարուն.
Ինքը դարձել հզոր մի գետ,
Պտտվում է լեռների հետ,
Աղմկում է ձորերի մեջ,
Սկսում է զրույց ու վեճ,
Ու փշրում է մեծավարի
Ուզած կողը ուզած սարի:
Եվ գալիս է երազ տղան
Բռնում կապույտ բաշը նրա
Ու տանում է, տանում, տանում,
Ուզած դաշտն ու այգին սնում:
Եվ դաշտի մեջ ու այգու մեջ,
Մոռանալով կռիվ ու վեճ,
Դառնում է նա հազար բարիք
Սեղաններին այս աշխարհի:

Սարալանջից իջնող առուն
Երազում էր մինչև գարուն....

Այդ օրը ծառերը կանաչ գույն ունեին, ջրերը՝ կապույտ, իսկ Լուսինը փայլում էր այնպես, ինչպես հազար տարի առաջ: Մարդիկ վերադառնում էին պրոսանքից կամ կինոյից և խոսում էին շատ կարևոր բաների մասին: Նրանք չէին նայում Լուսնին: Ասենք, եթե նայեին էլ, չէին տեսնի երկու տղաների, որոնք շփոթված նստել էին նոր վայրէջք կատարած խցիկում: Եթե անգամ լռեին, չէին կարող լսել նրանց խոսակցությունը, քանի որ տղաները չէին խոսում: Ի վերջո նրանցից մեկը՝ Նեյլը, վեր կացավ տեղից ու կտրուկ բացեց դուռը: Նրա առջև տարածվեց անկենդան Լուսինը, որը ամենևին էլ այնպիսին չէր, ինչպիսին հայտնվում էր մարդկանց ամեն գիշեր միլիոն տարուց ի վեր: Դա չզարմացրեց Նեյլին: Դեռևս Երկրում մարդիկ սովորեցրել էին նրան, որ Լուսինը անմարդաբնակ մոլորակ է, որ Երկրից փոքր է տասներեք անգամ, ձգողականությունը՝ վեց անգամ, որ ցերեկվա և գիշերվա ջերմաստիճանները տարբերվում են 300 աստիճանով: Նեյլը գլխիկոր սկսեց ցած իջնել: Բայց երբ ընդամենը մեկ քայլ էր մնացել մինչև Լուսին, նա գլուխը վեր բարձրացրեց ու գոռաց.

— Էդվի՛ն, երբ ես քեզ իջնելու ազդանշան տամ, դուռը ետևիցդ ուժեղ չփակես, իմացա՞ր:

— Իմացա,— կամաց ասաց Էդվինը, բայց իրականում ոչինչ էլ չիմացավ:

Որտեղի՞ց նա հասկանար այդ առաջին նախադասության իմաստը, որ առաջին անգամ արտասանում էր մարդը այլ մոլորակից:

Նեյլը իջավ ու լայն, մարդկային ոտնահետքեր թողեց Լուսնի վրա:

— Ես ընդամենը մի փոքրիկ քայլ կատարեցի,— ինքն իրեն ասաց նա,— բայց դա երևի մարդկության համար մեծ թռիչք էր:

Երկրում կինոյից ու պրոսանքից վերադարձող մարդիկ անկողին մտան: Մարեցին բնակարանների ջահերը, շենքերի լույսերը, փողոցի լապտերները: Նեյ-

*Տիեզերագնացները վայրէջքից հետո*



digitised by A.R.A.R.@

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՄԱՐ ՄԵԿ

*ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ*

լը ահով մտածեց, որ ինքը մենակ մնաց այս մեռած, լքված մոլորակում: Նա ուզեց սարսափից ճչալ, օգնություն կանչել, բայց մի սև ստվեր կտրեց ճամփան:

— Էդվի՛ն, Էդվի՛ն,— շփոթված շշնջաց Նեյլը,— ի՞նչ ես անում:

— Զբոսնում եմ,— քրքջաց Էդվինը,— այս մոլորակը ինձ դուր է գալիս: Հետաքրքիր է, չէ՞:

Նրանք իրար ձեռք բռնեցին ու կռանալով սկսեցին քարեր հավաքել:

Սովորաբար Երկրում այդ ժամին սկսում էին տպագրվել թերթերը: Բայց այդ օրը տպագրիչները անգործ նստած նայում էին Լուսնի վրա քայլող տղաներին: Նրանք սպասում էին պբոսանքի ավարտին, որովհետև իրենք էլ դեռ չգիտեին, թե ինչ պետք է հայտնեն ընթերցողներին:

— Ուշանում են,—ձեռքի ժամացույցին նայելով, մըտահոգ ասաց մի երիտասարդ բանվոր:

— Եվ ի՞նչ են անում այսքան երկար ժամանակ,— հորանջեց մի բեղավոր, որի քունը ակներևաբար տանում էր:

Նեյլն ու Էդվինը իրենց հավաքած քարերը լցրին նախօրոք պատրաստված տոպրակի մեջ: Նրանք փոսեր փորեցին ու ամրացրին սեյսմոմետրը, անտենան, հաղորդիչը: Մի խոսքով, Լուսնին հանձնեցին երկրային աչք, ականջ, լեզու: Հետո թափ տվին ձեռքերի փոշին ու մտան տիեզերանավ:

— Էդվի՛ն,— բազմոցին փռվելով՝ աչքերը փակեց Նեյլը:

— Ի՞նչ է:

— Ո՞ղջ ես:

— Կարծում եմ: Իսկ դո՞ւ:

— Չգիտեմ: Երկրում կերևա:

— Է՛հ,— ձեռքը թափ տվեց Էդվինը,— ավելի լավ է, արի ճաշե՛նք:

— Ի՞նչ կա ուտելու:



*Լուսնի մակերևույթը 15 կմ բարձրությունից*

— Հնդկահավի միս, երշիկ, կարկանդակ, անանասի հյութ:

— Հիանալի է, ախր ես քաղցից մեռնում եմ:

Նրանք արագ-արագ դատարկեցին պնակները ու քուն մտան:

Իսկ Երկրի վրա լույսը արդեն բացվել էր ու բոլոր թերթերը աղաղակում էին.

— Մարդը քայլում է Լուսնի՛ վրա:

— Ինչպե՞ս թե,— զարմանում էին մարդիկ ու շփոթված նայում իրենց ոտքերին:

Այդ օրը երկրագնդի ամենադժբախտ մարդը թերևս երրորդ տիեզերագնացն էր՝ Մայքլը, որը Լուսնից հարյուր տասներեք կիլոմետր հեռու սպասում էր իր ընկերներին: Նա այդպես էլ չիմացավ Երկիր մոլորակի ամենամեծ իրադարձության մասին, որովհետև իր խցիկում հեռուստացույց չուներ:

— Դե՛, գրողի ծո՛ցը,— շրթունքները կծոտելով մտածում էր նա,— միայն թե տղաներին ողջ-առողջ Երկիր հասցնեմ:

Մայքլի կարծիքով այս ուղևորության մեջ ոչ մի արտասովոր բան չկար: Արտասովորը Արգոնավորդների ճանապարհորդությունն էր կամ, ասենք, Մա-



digitised by A.R.A.R.@

գելանինը: Իսկ իրենք ի՞նչ են որ, սովորական ռոբոտներ, մեքենայի հասարակ պտուտակներ, որ օրեր շարունակ սուրում են խավարի միջով:

Լուսնի վրա երկու հոգի ոտքի կանգնեցին:

— Հը՞, չգնա՞նք,— ասաց նրանցից մեկը, չնայած երկուսն էլ գիտեին, որ մեկ րոպեից պարտավոր են օդ բարձրանալ:

Մարդիկ շունչները պահեցին: Առաջին անգամ ուրիշ մոլորակից բանական արարածներ փորձելու էին Երկիր գալ: Փորձելու էին... Տանող հրթիռը կրակ ու բոց ժայթքեց ու դղրդյունով պոկվեց տեղից: Ասենք, այդ դղրդյունը չլսվեց Լուսնի վրա բոլորին հասկանալի պատճառով: Միայն փոշու մի հսկայական ամպ բարձրացավ ու խցիկը կորավ խավարում:

— Ես այստեղ եմ, այստեղ եմ,— խավարի մեջ հնչեց Մայքլի տագնապալից ձայնը,—մեծացրե՛ք արագությունը:

Նելլն ու Էդվինը երեք ու կես ժամ մաքառելուց հետո, մայր տիեզերանավ մտան: Բայց նրանք չճչացին ուրախությունից, չփաթաթվեցին իրենց փրկարարին՝ Մայքլին: Պարզապես դեպի անհունը շպրտեցին իրենց բերող հրթիռը ու բազմոցի մեջ թաղվելով, սկսեցին պատկերազարդ հանդեսներ թերթել:

— Դե, ինչպե՞ս եք, արծիվնե՛ր,— անսպասելիորեն տիեզերանավում հնչեց Երկրի հաղթական ձայնը:

Ոչ ոք չպատասխանեց:

— Երկրում շատ լավ եղանակ է,— շարունակում էր քծնել ձայնը,—«Հորնե» ավիակիրը հազար երկու հարյուր փրկիչներով ձեզ է սպասում Խաղաղ օվկիանոսում:

— Հետո՞ ինչ,— ասացին տիեզերագնացները:

— Դե՛, դե՛,— սաստեց Երկիրը,— մի քիչ ավելի լուրջ, բոլորը հեռուստացույցի առջև նստած ձեզ են նայում:

Եվ իրոք, այդ երեկո, չնայած Երկրում շատ շոգ էր, մարդիկ խմբվել էին հեռուստացույցների առջև: Նրանք տոթից նվաղելով կոկա-կոլա, ջերմուկ կամ փունջ էին խմում և ուզում էին հրաշք տեսնել: Բայց հրաշք չկար: Կային երեք տղաներ, որոնք ինչ-որ խցիկում պառկած՝ ժամերով անշարժ նայում էին մի կետի:

Մարդիկ արդեն ուզում էին հիասթափվել, բայց Մայքլը խղճաց նրանց ու ասաց.

— Սիրելի՛ երկրաբնակներ, մի՛ դժգոհեք, խնդրում եմ: Հիմա ես ձեզ կզարմացնեմ:

Նա թեյի գդալով ջուր վերցրեց ու շպրտեց օդ: Գդալը կախվեց օդում, և ջուրն էլ ցած չթափվեց: Հետո Մայքլը ինքն էլ կախվեց օդում ու սկսեց խառնել հեռուստացույցի ալիքները, այնպես որ Երկրից նայողին թվում էր, թե տիեզերանավը թռչում է այլ կողմ կամ շեշտակի արագությամբ մխրճվում է Երկրի կուրծքը: Այդ բոլորը շատ զվարճալի էր, ու մարդիկ հեռուստացույցի առջև նստած քրքջում էին: Նրանք կուզեին, որ այդ հաղորդումները էլի շարունակվեն, բայց, ափսոս, տիեզերանավը վայրէջք կատարեց Խաղաղ օվկիանոսում: Երեք տղաները դեն շպրտեցին կրահագգեստները և նետվեցին դեպի ափում քարացած իրենց հարազատները: Բայց ճանապարհին մարդիկ որսացին նրանց ու փակ մեքենայով մեկուսարան տարան:

— Տիեզերագնացների առողջությունը նորմալ է,— հաջորդ օրը հայտարարեց դոկտոր Կարպանտիեն,— նրանք Երկիրը թունավորող ոչ մի մանրէ չունեն իրենց օրգանիզմում:

— Նրանց բերածը սովորական քար է,— հիասթափված ասաց պրոֆեսոր Ֆոքսը,— այն կարծես ոչ թե Լուսնից լինի, այլ հարևան բակից:

— Եկե՛ք վերջացնենք այս բոլորը,— մեկուսարանին մոտենալով, ժպտացին սև ակնոցներով մարդիկ,— որքա՞ն եք ուզում ձեր ուղևորության համար:

— Մեզ ոչ մի կոպեկ պետք չէ,— խնդրեցին տիեզերագնացները,— թողեք գնանք մեր բանին, մենք հո անգործ մարդիկ չե՞նք. կին, երեխաներ ունենք:

Երբ երեք տիեզերագնացները քսան օր հետո դուրս եկան մեկուսարանից, շատ ուրախացան, երբ տեսան, որ ծառերը նորից կանաչ գույն ունեն, ջրերը՝ կապույտ, իսկ Լուսինը փայլում է այնպես, ինչպես հազար տարի առաջ:

Միայն մարդիկ, ինչ-որ բանից վախեցած, գաղտնի վերցրել էին իրենց երազները Լուսնի վրայից ու տեղափոխել մի ուրիշ, ավելի ապահով մոլորակ:

## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Աշնան օրերն ամպամած
Ձմռան դռներն են կամաց
Եղյամով թակում,
Սկյուռիկը պտղակեր
Չոր կաղին է հավաքել
Ծառի փչակում:

Շուրջն աշուն է, խոր աշուն,
Անցած ամառն են հիշում
Ծառերը դողդոջ,
Շուտով վերջին ճաղարջը
Կուտի բրդոտ չաղ արջը,
Ու կմտնի որջ:



digitised by A.R.A.R.@

# Ն Ա Ի Ր Ի   Զ Ա Ր Յ Ա Ն



Այս դեկտեմբերի 31-ին լրանում է սովետահայ ականավոր բանաստեղծ Նաիրի Զարյանի (Հայաստան Եղիազարյան) ծննդյան յոթանասուն տարին:

Մահից ընդամենը մի քանի ամիս առաջ, մինչև անկողին ընկնելը, նա սկսել էր գրել իր կյանքի վեպը, որը ինչպես նշում է հեղինակն առաջաբանում, ամփոփվելու էր չորս հատորի մեջ: Նա գրում էր ոգևորված, չիկացած ներշնչանքով, կայծակի արագությամբ: Շտապում էր, ասում է նա նույն առաջաբանում, որ ավարտի այդ հատորները և այնուհետև իրականացնի հերթի դրած իր մյուս ծրագրերը, որոնք այնքա՜ն շատ էին: Շատ ու անսպառ էր թվում նաև բանաստեղծի եռանդը: Ո՛չ իր, ո՛չ նրա ընթերցողների մտքով չէր անցնում, որ առաջին հատորը հազիվ ավարտած, վրա է հասնելու մահը:

Նա մահացավ 1969 թ. հուլիսի 11-ին:

Այս համարից սկսած, մենք հատված առ հատված կտպագրենք գրողի դեռևս անտիպ վիճակում գտնվող վերջին գործը, ուր Նաիրի Զարյանը իրեն հատուկ պարզ ու հստակ ոճով, հումորով, համ ու հոտով նկարագրում է իր մանկությունը: Դա միայն մի մանկան կյանքի պատմությունը չէ: Դուք այդտեղ կտեսնեք հայ գյուղի անցյալի և հայ ժողովրդի ճակատագրական մի շարք դեպքերի պատկերը:

## ՄԵՐ ԳՅՈՒՂԸ

*Մանկության օրեր, երազի նման*
*Անցաք, գնացիք, էլ չեք դառնալու...*
*ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ*

Ես ծնվել եմ Խառակոնիս գյուղում:

Մեր գյուղը գտնվում էր Վանի վիլայեթի Արչակ սանջակի (գավառակի) մեջ, Արչակից երեք-չորս կիլոմետր հեռավորության վրա, Արչակ լճի ափին:

Արչակն ու Խառակոնիսը միշտ միասին էին հիշատակվում, միասին էին մեծարվում և միասին ծաղրվում:

Վանեցիք ծաղրական մի երկտող էին հանգավորել մեր երկու գյուղերի մասին.

«Մեջ Արճակ, մեջ Խառակոնիս —
Գաթան թխեցին առանց խորիս»:

Ճիշտ է, որ մենք Խառակոնիսում գաթայի մեջ խորիս (բոված ալյուր, որ շաղախում էին յուղով) չէինք դնում: Բայց ինչո՞ւ է դա ծիծաղելի, ես մինչև այսօր էլ չեմ հասկանում:

Խառակոնիս, ըստ երևույթին, հին ուրարտական անուն է: Բայց օսմանցիները աղավաղել էին մեր գյուղի անունը, ասում էին «Կարա գյունտուկ», որ նշանակում է Սև ցերեկ:

Մեր գյուղի ցերեկները շատ արևոտ էին ու պայծառ: Եվ եթե հաճախ սևանում էին, ապա թուրքերն էին սևացնում:

Խառակոնիսի հին ուրարտական ծագումը թերևս նրանով է հաստատվում, որ մեր գյուղի ժամատան բեմի ամբողջ երկարությամբ դրված քարը ծածկված էր ուրարտական սեպագիր արձանագրությամբ: Հետագայում Բորիս Պիոտրովսկու աշխատություններից իմացա, որ դա ուրարտական հզոր թագավոր Արգիշտի Երկրորդի (թե՞ Առաջինի) արձանագրությունն էր:

Փոքր հասակում ես լսել եմ այդ արձանագրության մասին ցավերգական մի պատմություն: Ինչ-որ եվրոպական մի երկրից մեր գյուղն են գալիս մի խումբ գիտնականներ (հետագայում իմացա, որ գերմանացիներ են եղել) և, տեսնելով Արգիշտիի արձանագրության քարը, շատ ուրախանում են, ցանկանում են տանել իրենց հետ՝ փոխարեն մեծ գումար առաջարկելով գյուղին: Խառակոնիսցիք չգիտեին, թե դա ինչ քար է. բայց քանի որ դրանով եզերված էր սուրբ Թևադորոս եկեղեցու բեմը, ապա սրբություն էին համարում, կայրույթով ետ են մղում օտարերկրացիների առաջարկած գումարը և մահակներով զինված կանգնում են եկեղեցու դռանը, որպեսզի այնտեղից ոչ ոք չհամարձակվի դուրս բերել սրբական քարը:

Գերմանացիները ձեռք են բերում միայն այդ սե-



5552-Ա. Ի.

digitised by A.R.A.R.@



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

պագիր արձանագրության պատճենը հանելու իրավունք:

Խառակոնիսցիներն իրենց հին սրբությունն այսպես են պաշտպանել: Իսկ հռչակավոր Լինչը Թուրքահայաստանի գյուղերին նվիրած իր աշխատության մեջ ասում է, թե Խառակոնիսում կանայք անվեհեր էին, տղամարդիկ՝ վախկոտ: Ես, ճիշտն ասած, վիրավորվեցի Լինչի այդ բնութագիրը կարդալով: Քանի որ ե՞րբ է եղել Խառակոնիսում, որ իմանար, թե այնտեղ ով է քաջ և ով վախկոտ: Ես Լինչից ավելի շատ եմ ապրել Խառակոնիսում և, այնիվ խոսք, մեր տղամարդկանց վախկոտությունը չեմ նկատել:

Իսկ Արչակցիք մեր գյուղացիների մասին ասում էին, որ դրանք սնապարծ են, լոպպալ: Իբր թե Խառակոնիսցիք մի տեղ հյուր գնալիս իրենց աղքատությունը քողարկելու համար հարևանի «բալաք շալվարն» էին հագնում: Բալաք շալվար, այսինքն՝ թանկագին բրդից գործված գույնզգույն շերտավոր շալվար, հագնելու հնարավորություն ունեին միայն ունևոր գյուղացիները: Բալաք շալվար և չուռ քյապախիկ (անգորական այծի փափուկ մազից գործված հաստ, կարճ, կիսաթև մի հագուստ, որ փոխարինում էր վերարկուին): Արչակցիք մեր գյուղացիների մասին սիրում էին ասել.

— Եթե Խառակոնիսի հանդերով անց կենաս և տեսնես «հորովելում»[1] դրած բալաք շալվար, իմացիր, որ հարևանից է փոխ առնված:

Ճիշտ է, որ խառակոնիսցիք չէին սիրում իրենց աղքատությունը ցույց տալ: Բայց այդ պակասությունն ինչո՞ւ է ծիծաղելի. ես մինչև այսօր էլ չեմ հասկանում:

Ես մոռացա ասել, որ Խառակոնիսում է գտնվում նաև հայ հանճարեղ բանաստեղծ Նահապետ Քուչակի գերեզմանը: Ես իր տեղում կպատմեմ, թե ինչպես առաջին անգամ տեսա այդ գերեզմանը: Իսկ այստեղ կուզենայի ասել, որ եթե Լինչը և արչակցիք իմանային, որ մեր գյուղում են գտնվում Արգիշտիի սեպագիր արձանագրությունը և Նահապետ Քուչակի գերեզմանը, ավելի հարգանքով կարտահայտվեին խառակոնիսցիների մասին:

Ասացի, որ Խառակոնիսը գտնվում էր Արչակ լճի ափին: Դա Վանա ծովից մոտ հիսուն կիլոմետր դեպի Արևելք է: Փոքրիկ աղի լիճ: Իմ մանկության օրերին այնքան հեռու էր գյուղից, որ ես լիճը տեսնելու համար գերեզմանոցի գլուխն էի բարձրանում և այնտե-

---

[1] Հորովել էր կոչվում հերկվող արտի ծայրը, որտեղից գութանը կամ չութը պտույտ էր գործում և ընկնում հաջորդ ակոսի վրա։ Հորովել էր կոչվում նաև գութանի երգը։

digitised by A.R.A.R.@

ղից հապիվ երևում էր բարակ երկնագույն ժապավենի նման: Հետզհետե առաջացավ, մոտեցավ գյուղին, տների մի մասն առավ իր մեջ, ծածկեց մեր գյուղի ամենաքաղցրահամ և ամենաառատաբուխ աղբյուրը, և գաղթից առաջ մեր գյուղացիներն արդեն մշակում էին Խառակոնիսի տեղը փոխելու ծրագիրը:

Եթե լիճը այդքան անգութ կերպով չառաջանար, մեր գյուղը շատ գեղեցիկ դիրք ուներ: Մանյակաձև տարածված էր բլուրի շուրջը, իսկ բլուրի վրա գերեզմանոցն էր. հին նահապետական կլոմլեխներով, Թևադորոս եկեղեցին և Սանասարյան տարրական դըպրոցը:

Հանդից կամ հարևան գյուղերից վերադառնալիս հեռվից առաջինը երևում էր ժամի սպիտակ գմբեթը, և դա իմ մանկության անմոռաց հուշերից մեկն է:

Սրանով արի վերջացնենք Խառակոնիսի ընդհանուր նկարագիրը: Մնացածը կպատմեմ իր տեղում:

## ՏԱՏՍ

Երբ ես գրել-կարդալ սովորեցի, տեսա մեր տան սյունին դանակի ծայրով փորագրած հետևյալ արձանագրությունը.

**«Մանչ Հայաստան ծնյալ ի 1900 թվականի դեկտեմբերի 31-ի գիշեր կամոքն աստուծո: Ամեն»:**

Մայրս ասաց, որ դա իմ քեռին է փորագրել: Նա մեռել էր իմ ծննդից մի քանի ամիս հետո:

Իմ մանկական առաջին հիշողությունն այն է, որ ես մտնում էի մառան ծիրանի չիր գողանալու և աչքերս փակում էի, որ տատիկս ինձ չտեսներ:

Տատիկս մի անգամ, այնուամենայնիվ, տեսավ, ես փախա մառանից և ընկա թոնիր: Իմ լավ բախտից այդ օրը թոնիրում կրակ չկար, այլապես կայրվեի: Ոտքերիցս բռնած ինձ դուրս քաշեցին թոնիրից: Միայն աչքերս մոխիր էր լցվել և գլխիս վրա առաջացել էր մի մեծ ընկույզ: Ինձ պատժելու փոխարեն տատիկս սկսեց իր ծնկներին խփել ու լաց լինել: Հանաք բան չէր, ես ծնողներիս առաջնեկն էի և միակ տղան: Ինձանից հետո ծնվել էին երկու աղջիկ:

Մայրս իմ աչքերը մոխիրներից մաքրեց ու լվաց, գլխիս ուռուցքի վրա խմոր կապեցին, որից հետո տատս ինձ ծնկների մեջ սեղմեց ու լաց լինելով ասաց.

— Չիրը քեզ համար եմ պահել, արևուդ մեռնեմ: Չիրը քոնն է, մի՛ գողանա: Ես ինքս քեզ կտամ:

Ես երեք տարեկան էի և արդեն հասկանում էի, որ մենք աղքատ ենք: Դրա համար էլ տանը պատահած ամենահամեղ բաներն ինձ էին ուտացնում: Միայն ինձ: Բայց ես էլի շարունակում էի գողանալ այն, ինչ որ պահված էր միայն ինձ համար: Բկլիկ էի և անհամբեր, ինչպես լինում են երես առած երեխաները:

Տատ..կս, մայրիկս և հորաքույր Ալմաստը համոզված էին, որ ես արտակարգ խելոք երեխա եմ և ինձանով պարծենում էին հարևանուհիների առաջ: Նրանք իմ վզից կախել էին մի մեծ կապույտ ուլունք, որ հարևաններն ինձ աչքով չտան: Ես ատում էի այդ ուլունքը, մանավանդ, որ աղջիկների վզից էլ ուլունքներ էին կախված լինում: Բայց հանել ու դեն գցել չէի համարձակվում, որովհետև ես էլ էի հավատում, որ հարևաններն ինձ աչքով կտան: Չնայած, որ տարիներ հետո միայն իմացա, թե ինչ է նշանակում աչքով տալ:

Տատս, մայրս ու հորաքույր Ալմաստը իրար հետ մրցում էին ինձ գուրգուրելու և երես տալու մեջ: Ես հերթով քնում էի նրանց անկողիններում: Սակայն տատիկս հաղթում էր բոլորին և ինձ բոլորից ավելի հաճախ էր տանում իր անկողինը: Քնելուց առաջ և առավոտյան ստուգում էր իմ ջերմությունը — հիվա՞նդ հո չեմ:

— Վա՜յ, աչքերս կուրանան, Հայաստանս քեֆ չունի:

Եվ գործադրում էր գյուղական հեքիմի իր բոլոր հնարանքները՝ մաժում էր փորս ու կողերս, որից հետո ես աչխուժանում էի և տրտինգ տալով դուրս փախչում:

Տատիկս... փոքրացուցիչ «իկ»-ը նրա համար քիչ էր, որովհետև այնքան կարճլիկ էր ու փոփռ, որ երբ կանգնած էր լինում իմ հսկա հոր կողքին, թվում էր նրա ոչ թե մայրը, այլ փոքրիկ երեխան:

Տատիկս, ինչպես ասացի, գյուղական հեքիմ էր, այսինքն՝ ինքնուս բժիշկ: Նա բուժում էր ամեն տեսակի ներքին հիվանդություններ, ամեն տեսակի վերքեր և կոտրվածքներ: Չրի: Մարդկանց բուժելու համար փող վերցնելը տատիկս մեղք էր համարում: Միայն երբ հարկավոր էր մարմնի որևէ մասին յուղ քսել մաժելու համար, տատիկս խնդրում էր, որ հիվանդը իր հետ մի գդալի ծայրով յուղ բերի, որովհետև մեր տանը յուղ հաճախ չէր լինում, եթե մանավանդ մեր միակ ծուռ կովը մնացած էր լինում ստերջ: Իսկ դա մեր կովի հետ հաճախ էր պատահում: Տատիս հաճախորդները հասկանում էին մեր վիճակը և յուղը բերում էին ոչ թե «մի գդալի ծեր», այլ բավական շատ, և դա էր լինում իմ տատի վաստակը:

Մեր գյուղում պատահել էր մի դեպք, որ իմ տատիկին բերել էր լոխման հեքիմի հռչակ: Մեր գյուղի տերտերը ձին հեծած գնում է հանդ, որ ստուգի, թե ցորենը հասե՞լ է արդյոք, հնձելու համար: Ցորենը



digitised by A.R.A.R.@

այնքան բարձր է լինում, որ, ինչպես ասում էին, «ձիավոր մեջը չէր երևա»: Տերտերը ձին կապում է արտի եզրին, ինքը ոտով մտնում է արտը՝ փառավոր միրուքը հաճույքից փայփայելով (այդպես էին պատմում): Դու մի ասի, արջը արտի մեջ պառկած քնած է լինում և տերտերն ուղղակի ընկնում է արջի վրա: Արջն արթնանում է, տերտերին գրկում, տակն է դնում և սկսում է ջարդել ու գզել: Թաթով խփում է, գլխի կափարիչը պոկում և երևի համոզված լինելով, որ տերտերն արդեն մեռած է, թողնում ու դուրս է գալիս արտից: Ձին, արջին տեսնելով, կապը կտրում է և փախչում գյուղ: Տանեցիք լավ գիտեին, որ տերտերը ձիով գնացել էր Կվրիկի արտը նայելու: Մեր գյուղի բոլոր հանդամասերը անուն ունեին: Այդ հանդամասը կոչվում էր Կվրիկ և այդ արջի անունն էլ մնացել էր Կվրիկի արջ:

Տերտերի եղբայրներն ու բարեկամները գնում են Կվրիկ, մտնում են ցորենի արտը և տեսնում են տերտերին արյունլվա, կիսամեռ վիճակում: Վերադառնում են գյուղ, տատիկիս իր խնքնուսի դեղորայքի հետ միասին դնում են սայլն ու տանում արտում կիսամեռ ընկած տերտերի մոտ: Տատիկս տեղնուտեղը տերտերի գլխի կափարիչը վրա է դնում, կապում է բոլոր վերքերը և տերտերին բերում են գյուղ:

Մի քանի ամիս իմ տատի ձեռքին բուժվելուց հետո տերտերը լրիվ առողջանում է, ապրում է բավականին երկար, ինձ կնքում է և մի տարի հետո նոր հոգին տալիս աստծուն:

Տատիկս նաև թիվ չափող էր, այսինքն մարդկանց ապագան գուշակող: Դա անում էր շատ ինքնատիպ ձևով: Ձախ ձեռքի փոքրիկ ափը բաց էր անում, աջ ձեռքով թիվ էր չափում մինչև արմունկ, ապա ետ էր չափում, եթե թիվը չէր հասնում ձախ ձեռքի մատի ծայրերին, վատ նշան էր, իսկ եթե հասնում էր և մնավանդ ավելանում՝ լավ նշան էր: Ես լավ գիտեի, որ տատիկս չի կեղծում: Նրա թիվն իրոք մեկ պակասում էր, մեկ ավելանում:

Խառակոնիսցիք հավատում էին տատիկիս բժշկությանը և թիվ չափելուն: Հաճախ էին դիմում նրան.

— Խարապտի՛ խարս, Եղիպարի՜դ արևը, արի մեր տուն: Տղեն ընկել է, ոտը կոտրել:

— Խարապտի՛ խարս, Հայաստանի՜դ արևը, մի թի՛վ չափիր: Մարդս քաղքից երեկ պիտի գար, չի եկել:

— Խարապտի՛ խարս, ես մի շաբաթ ի, կողիս ցավից մեռնում եմ: Մի արդար ձեռքովդ մաժի՛ր:

«Խարապտի խարս» նշանակում էր Հայրապետի հարս: Հայրապետ իմ պապի հոր անունն է եղել: Նա հարևան Կղզլա գյուղից եկել և բնակություն էր հաստատել Խառակոնիսում: Դրա համար գյուղում հողակտոր չի ունեցել և աղքատ է եղել: Պապս՝ Կարապետը, եղել է նրա միակ որդին. գյուղում նրան աղջիկ չեն տվել և նա գնացել է Վան, այնտեղ իր նման աղքատ մի աղջիկ է ճարել և իրեն կին է բերել Խառակոնիս:

Տատիս անունը եղել է ոչ ավել ոչ պակաս... Աֆրոդիտե: Գյուղացիք նրա անունը կրճատել և դարձրել էին Տիտե, որ կամաց-կամաց կորցրել էր իր նախնական իմաստը և խառակոնիսցիների հասկացողության մեջ նշանակում էր կարճլիկ վտիտ պառավ: Սակայն տատիկիս Տիտե մականունով կանչում էին սակավ դեպքերում, ծաղրելու համար, գյուղի գռռող ունևորները: Խառակոնիսցիք մեծ մասամբ տատիկիս հարգանքով կոչում էին Խարապտի հարս կամ հեքիմ-մարե:

Իմ պապը ջահել հասակում կատարում է ծիծաղելի մի հիմարություն, որով նա մնացել էր խառակոնիսցիների հիշողության մեջ: Տավարած է վարձվում ունևոր մի գյուղացու տանը: Գութանավորներին փլավ են բերում: Նրանք տավարած Կարապետին հրավիրում են փլավ ուտելու, նա ամաչում է հասակավորների հետ միասին սեղան նստելուց և ասում է.

— Ես փլավ չեմ ուտում:

Ուզում է ասել՝ չեմ սիրում: Գութանավորները նրան ձեռ են առնում՝ բացականչելով.

— Յա՜... Կարապետը փլավ չի ուտում:

Պապս մեռնում է իմ հոր ծննդից մի տարի հետո՝ որդուն իբրև ժառանգություն թողնելով իր հողազրկությունը և այդ պավեշտական խոսքը՝ «Կարապետը փլավ չի ուտում»:

Պապիս մահից տասնյակ տարիներ հետո, երբ իմ հասակակից երեխաները ուզում էին ինձ վիրավորել, ծաղրական եղանակով ասում էին.

— Կարապետը փլավ չի ուտում:

կամ՝

— Տիտեի թոռ:

Իմ տատի հեքիմական հեղինակությունը չէր փրկում մեզ ո՛չ աղքատությունից, ո՛չ էլ ծաղր ու ծանակից: Խառակոնիսցիք սարսափելի սիրում էին իրար ծաղրել: Գյուղում ոչ մի նշանավոր կամ աննշան ընտանիք չկար, որ չունենար իր ծաղրական մականունը: Հետագայում ես իմացա, որ մարդկանց մականուն դնելը ընդհանուր սովորություն էր բոլոր հայկական (ոչ միայն հայկական) գյուղերում:

*(Շարունակելի)*



digitised by A.R.A.R.@



ԹԱԹՈՒԼ ԲՈԼՈՐՋՅԱՆ

# ՁՄՌԱՆ ԾԱՌԸ

Հեռու երկնից
Թաքուն մի ձեռք
Թափ է տալիս
Ձմռան ծառը,
Եվ թափվում են փաթիլները
Այնպե՜ս թեթև,
Այնպե՜ս սառը...
Նրանց ճամփին
Բուք է եղել,
Ցուրտ է եղել
Նրանց ճամփին:
Եվ հիմա, տե՛ս,
Ցած են թափվում,
Օրորվում են
Օդում թեթև,
Որպես գարնան
Չվող երամ,
Որպես ճերմակ
Ծաղկաթերթեր:

* * *

Մեղմ ճոճվում են լարերնահա՝
Ձյուն է նստել նրանց վրա,
Օրորում է քամին կամաց՝
Չընկնի՜ քնած ձյունիկը ցած:
Էլ ջրերը չեն աղմկում,
Ալիքները մտել են քուն,
Ճերմակել է առվի հունը,
Սառցի տակ է նրա քունը:

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

# ԵՐԱՆԳՆԵՐ ՈՒ ՆՐԲԵՐԱՆԳՆԵՐ



ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՈՐԲՈՎՍԿԻ

Մարդուն բարև չտալը, նրա ողջույնին չպատասխանելը մի վատ սովորույթ է, որ գալիս է անցյալից, դասային սնապարծության ժամանակներից: Մտաբերենք Գրիբոյեդովին. «Խոնարհվես, կաշվիցդ էլ դուրս գաս՝ գլխով էլ չեն անի...»

Հենց այդպես էր բարև առնում օրինակ, իշխան Պոտյոմկինը, երբ մարդիկ առավոտները գալիս էին նրան բարի լույս ասելու: Սոցիալական բարձր դիրքը պարտադրում էր կամ բնավ չպատասխանել ռամիկների ողջույնին, կամ էլ բավարարվել գլխի հազիվ նկատելի շարժումով: «Ստորին աստիճանի» մարդուն հավասարի պես բարևելը մեծ անմտություն և նվաստացում էր համարվում:

Հասարակական հարաբերությունների երանգներն արտահայտելու համար կայսերական Չինաստանում կար բարևելու վեց եղանակ. սկսած հավասար դիրքի մարդկանց բարևից, երբ թևքը հասցվում էր բերանի բարձրության, մինչև գետնին փռվելը: Այս վերջինը, իբրև գերագույն հարգանքի նշան, արվում էր կայսեր ներկայությամբ կամ նրա հրովարտակի ընթերցման ժամանակ:

Իր ողջույնները նույնքան խստորոշ դասակարգում էր նաև Լյուդովիկոս 14-րդը, որ իր ժամանակ ընտիր վարվելաձևի օրենսդիր էր համարվում: «Ակնվական դասից որևէ մեկին հանդիպելիս,— գրել է ժամանակակիցը,— նա կիսով չափ բարձրացնում էր գլխարկը, նույն շարժման մեկ ուրիշ ձևով գլխարկը հասցնում էր մինչև ականջը և հետո էլ՝ մի քիչ ավելի վեր: Ավելի աննշան մարդկանց հանդիպելիս նա միայն ձեռքը մոտեցնում էր գլխարկին: Նրա ողջույնները մըշտապես տարբեր էին»:

Բայց հնարավո՞ր է, արդյոք, այդ երանգները հաղորդել ձեռք սեղմելիս: Կարծես թե ոչ: Սակայն դուրս է գալիս, որ եթե բանը վերաբերում է սեփական գերազանցությունը շեշտելուն՝ դրա միջոցները միշտ էլ գտնվում են:

Նախ և առաջ, ամեն մարդու չէ, որ ձեռք է մեկնվում:

Երկրորդ, ամեն մարդ չէ, որ արժանի է հինգ մատի: Մեկին կարելի է միայն երեք մատ տալ, մյուսին՝ նույնիսկ երկուսը: Գրող, ակնվականի պավակ Վ. Սոլոգուբի մասին Ա. Պանաևան իր հուշերում գրել է. «Հասարակ մահկանացուի հետ ծանոթանալիս նա միայն երկու մատն էր մեկնում»:

Այսօր էլ կան մարդիկ, որ խըստորեն տարբերում են իրենց բարևելու եղանակները, նայած թե ում են բարևում: Այսպիսի մարդը իր ենթակային բարևում է չորությամբ, տարածություն պահելով: Պաշտոնով իրեն հավասար մարդուն ձեռք է մեկնում: Իսկ վերադասին հանդիպելիս շողում է հըրճվանքից: Եվ դրա պատճառն այն չէ, որ այդ ընկերն ի ծնե գռեհիկ է, քծնող կամ վատ մարդ: Պարզապես սեփական արժանապատվությունը պահելու նրա պատկերացումներն են այդպիսին: Իսկ դըրանք նա ժառանգություն է ստացել այն ժամանակներից, երբ պաշտոնյա մարդիկ համազգեստ էին հագնում և պուդրայած կեղծամներ կրում: Իհարկե, հիմա ոչ ոքի մըտքով չի անցնի կեղծամ դնել: Այդ դեպքում ինչո՞ւ հնարավոր եղավ նույն այդ անցյալից մեր օրերը բերել շատ ավելի կարևոր բան՝ մարդկանց հետ շփվելու եղանակը:

Մենք հիմա զարմանում ենք, թե վարվելաձևի երանգներին ինչ կարևորություններ էին տալիս անցյալում:

Բյուզանդական կայսր Կոստանդին Ծիրանածինը վարվելաձևին նվիրած իր գրքում շատ էջեր է հատկացրել այն հարցին, թե հանդիպելիս ով ում քունքը, կուրծքը, ձեռքը, շուրթերը կամ այտերը պետք է համբուրի: Առանց չափազանցության կարելի է ասել, որ դա էլ իր տեսակի բարդ գիտություն էր:

Բարևի, համբույրներ տալու կարգըն անցյալում շատ անգամ էր անխուսափելի վեճերի ու թյուրիմացությունների պատճառ դառնում: Ամենից առաջ դիվանագիտության ասպարեզում: Ասենք, Եկատերինա Երկրորդի ընդունելության ժամանակ ավստրիական դեսպանը, որ ուներ Մերսի վայելուչ ազգանունը, չի համբուրել կայսրուհու մեկնած աջը: Կամ արտասահմանյան դեսպանները, որ մինչ այդ անմռունչ համբուրում էին ռուսական ցարի ձեռքը, մահացու վիրավորվել են,





digitised by A.R.A.R.@

երբ ցարը հրամայել է տեղնուտեղը լվանալ իր նույն այդ ձեռքը:

Շատ թագավորներ էլ համոզված էին, թե մեծագույն պատիվ են անում մարդուն, թույլ տալով, որ նա համբուրի իր ոտքը: Դա բարձր արտոնություն էր համարվում հին Եգիպտոսում: Այդ պատիվը ձեռք էին բերում դժվարությամբ, դառնում նախանձի և պալատական դավերի առարկա: Վայն եկել տարել էր այն գոռոզամիտ կամ անխելք մարդուն, ով սիրտ էր անում արհամարհել այդ բարձր պատիվը: Գիտնականները կարդացել են այն սեպագիրը, որ փորագրվել է երեք հազար տարի առաջ Սարգոն Երկրորդ թագավորի հրամանով. «Սըրտիս բովանդակ ցասմամբ ես իմ



բոլոր երկանիվներին, բազում ձիերին, իմ ամբողջ կորաբանակին ստիպեցի գնալ դեպի Ասորեստան...» Ո՞ւմ դեմ էր շարժվում այդ մահաբեր վիթխարի կորաբանակը: Ուրզան Մուսասիրցու դեմ: Իսկ նա ինչո՞վ էր կայրացրել հզորազոր Սարգոնին: Նրա հանցանքն էլ նըշված է սեպագրում. «...չհամբուրեց իմ ոտքերը...»

Երեք հազար տարի եւ գնալու կարիք չկա տիրակալի ոտքը համբուրող մարդ գտնելու համար: Այդպիսի տեսարան այսօր էլ կարելի է տեսնել Վատիկանում: Այսպես են ողջունում Հռոմի պապին իր պալատում: Այդ սովորույթը կաթոլիկ եկեղեցին ժամանակին փոխ էր առել ֆրանսիական Կարոլինգների արքայական դինաստիայից: Բայց դրա հայրենիքը Փարիզն էլ չէր: Ֆրանսիական արքունիքն իր հերթին այդ սովորույթը վերցրել էր հռոմեական կայսրներից: Դա Դիոկղետիանոս կայսրն էր հաստատել: Բնական կլիներ ենթադրել, որ նա, հնագույն նշանավոր տոհմի հետնորդը լինելով, մտցրել էր այդ սովորույթը իր բարձր դիրքն ու ազնվազարմ լինելն ընդգծելու համար: Բայց ոչ, ճիշտ հակառակը: Երիտասարդ հասակում ազգաս կայսրը ոչխար է արածացրել Դալմատիայում: Բայց ամենից «սոսկալին» այն էր, որ դա բոլորը գիտեին: Ահա թե ինչու այդ նախկին հովիվը, կայսերական տոգա հագնելուց, ճոխ խնջույքներ սարքելուց, մահապատիժների վճիռներ արձակելուց հետո, իր արքունի ողջ ճոխությամբ ամբողջ կյանքում ջանում էր մոռացության տալ իր այդ անցյալը, ստիպել, որ բոլորը մոռանան: Դա հանգիստ չէր տալիս կայսրին, երբեմն նրան թվում էր, թե նույնիսկ իր ամենաշողոքորթ պալատականի աչքերում հեգնանք է խաղում: «Հովիվ է եղել. չէ՞»: Եվ առանձնանում էր կայսրը ու անձնատուր լինում իր լուռ ցասումին: Այդպիսի մի պահի չէ՞, արդյոք, որ նրա մեջ ծագել է ոտքերը համբուրել տալու միտքը, պաշտամունքի այդ բարբարոսական սովորույթը:

Ի պատասխան ողջույնի՝ հռոմեական կայսրերը մերձավորներին ձևա ու կուսպ համբույրներ էին տալիս: Համբուրելով ողջույն տալն այնպիսի տարածում էր գտել, որ երբ Տիբերիոսը համաճարակի ժամանակ վերացրել է ամենօրյա համբույրների ծեսը, պալատում իրարանցում է ընկել: Իսկ Ներոնը սենատի նկատմամբ իր ատելությունն արտահայտելու համար չէր գտել ավելի հարմար միջոց, քան Հունաստան մեկնել և վերադառնալ՝ սենատորներից ոչ մեկին չհամբուրելով: Եվ դա խորապես վիրավորել էր բոլոր սենատորներին:

Բայց և, հակառակ դրա, երբ կայսրը պատասխանում էր ողջույններին, ապա չափազանց կարևոր էր այն, թե նա ինչ հերթականությամբ էր դա անում: Տասնյակ խանդոտ աչքերը հետևում էին, թե ում կհասնի առաջին համբույրը, ում՝ երկրորդը...

Ի՞նչ գիտենք այսօր ոմն Ա. Պղոտիոս Սաբինի մասին: Այն, որ նա և իր ժառանգները նրա ամենամեծ վաստակը համարել են հետևյալը. «Նա ստացել է Անտոնիոս Պիոս կայսեր երկրորդ ողջույնը»: Եվ դա համարել են այնքան կարևոր, որ այդ բառերը փորագրել են տվել նրա տապանաքարին:

## Ո՞Վ Է ԱՌԱՋԻՆԸ

Սակայն առաջինը բարևելու հարցը վերաբերում է ոչ միայն արքունի վարվելաձևին: Որոշ սովորույթներ այնքան են արմատավորվել մեր կենցաղում, որ մենք այլևս չենք նկատում:

Դուք մտնենում եք ծանոթ մարդու: Ո՞վ պետք է առաջինը բարևի: Բնականաբար, մտնողը: Մտնում եք մի սենյակ, ուր ուրիշ մարդիկ կան: Պարզ է, որ ներս մտնողը



պետք է բարևի: Տարեց մարդու հանդիպելիս նույնպես կրտսերը պետք է առաջինը բարևի: Բայց անպայման ավագը պետք է ձեռք մեկնի: Վարվեցողության բոլոր այս ձևերը, որ վաղուց ի վեր արմատացել են մեր կենցաղում, պատմակա-



digitised by A.R.A.R.@

# ՄԱՐԴԿԱՆՑ ՊԵՏՔ ԵՆ ՄԻԱՅՆ ՄԱՐԴԻԿ

*ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ*

Կար մի տղա, անունը՝ Պերճ,
Միշտ մազերը խռիվ:
Նա մի բան էր ուզում անվերջ՝
Ազատ լինել լրիվ:
Ինչ ուզում է՝ թող որ անի,
Չխանգարեն մարդիկ:



Իսկ ավելի լավ չի՞ լինի,
Որ... չլինեն մարդիկ:
Այդ ասելը եղավ, մեկ էլ
Իրեն տեսավ մենակ.
Շուրջը գյուղեր ու քաղաքներ,
Ինքն է մարդը միակ:
Նա դուրս վազեց, բայց ոչ մի տեղ
Մարդ արարած չկար:
Մտավ խանութ, որ հաց գներ,
Ավա՜ղ, հաց էլ չկար:
Կինո չկար, թատրոն՝ նույնպես,
Համերգ, բալետ, պարեր,
Դատարկ էին՝ մանկապարտեզ,
Դպրոց, ինստիտուտներ:
Ուզեց մի տեղ խաղալ թենիս,



նորեն գալիս են ամենահեռավոր ժամանակներից: Իհարկե, երբ այսօր առաջինն ենք բարևում պատվարժան և հասակավոր մարդուն՝ մենք նվազագույն պատկերացում իսկ չունենք, ասենք, «Մանուի օրենքների» մասին, որ երևան են եկել հին Հնդկաստանում, շուրջ երկու հազար տարի առաջ: Այդ «օրենքների» կետերից մեկը նրան, ով առաջինը կբարևեր հասակավոր մարդուն, իբրև փոխհատուցում, խոստանում էր «չորս հատկության շնորհում»՝ երկար կյանք, իմացություն, ուժ և փառք:

Սակայն որոշ ժողովուրդներ հետևում են ճիշտ հակառակ կանոնների: Այսպես, ըստ վարվելաձևի մուսուլմանական կանոնների, առաջինը պետք է հասակավոր մարդը բարևի: Դրան համապատասխան՝ տերը ծառային, ձիավորը՝ ոտքով գնացողին և այլն: Վարվել ուրիշ կերպ, այսինքն այնպես ինչպես մենք ենք վարվում, նշանակում է լինել անվայելուչ:

Օրինակներ գտնելու համար կարիք չկա մուսուլմանական արևելքին դիմել: Հայտնի գրողներից, դերասաններից շատերը, նկատելով, որ ճանաչում են իրենց, իրենք են առաջինը բարևում նույնիսկ անծանոթ մարդուն: Այդպես էր վարվում նաև Վ. Ի. Լենինը, որ միշտ առաջ ինքն էր բարևում Կրեմլի ժամապահին: Իսկ եթե մի հեռավոր գյուղ գնաք, ուր չեք եղել առաջներում, հանդիպող մարդիկ, ըստ ժողովրդական բարի ավանդների, նախ իրենք բարև կտան ձեզ:

Ուրեմն, ո՞վ պետք է այնուամենայնիվ առաջինը բարևի:

Հնարավոր է՝ կռահում եք արդեն:

Առաջինը բարևում է նա, ով այնքան սեփական արժանապատվություն ունի, որ չի վախենում այն կորցնել: Որոշ մարդիկ դրանից շատ են վախենում:

Առաջին բարևողը հանդիսանում է ամենակիրթ մարդը:

## ԲԱՐԵՀԱՄԲՈՒՅՐ ՄԱՐԴԿԱՆՑ ՄԱՍԻՆ

Միտք արե՞լ եք երբևէ, թե ինչ ասել է «բարեհամբույր»: Ըստ ժամանակակիցների հուշերի, Էնգելսը, օրինակ, եղել է «հմայիչ ու բարեհամբույր մարդ»: Մարքսին ճանաչողներից շատերը նույնպես նկատել են նրա այդ հատկությունը. նա «ընկերների մեջ... ամենից բարեհամբույրն էր»: Լենինին լավ ճանաչող ժամանակակիցներից մեկի վկայությամբ՝ «Վլադիմիր Իլյիչը շատ բարեհամբույր մարդ էր»...

Այս մեծ մարդիկ, ապրելով անողոք պայքարի և անասելի դժվարությունների մեջ, պահպանել են մարդկային այդ սքանչելի հատկությունը՝ բարեհամբույր լինել:

Երբ Պուշկինը գրում է իր նշանավոր «Ողջո՜ւյն քեզ, մատա՛ղ, անծանո՛թ սերունդ» տողը, նրա «Ողջույնն» ուներ շատ ավելի մեծ նշանակություն, քան պարզ մի ցանկություն, որ գալիք սերունդը



լավ առողջություն ունենա: Ճիշտ այսպես էլ, հանդիպելիս բարև տալը շատ ավելի մեծ նշանա-



digitised by A.R.A.R.@

Հակառակորդ չուներ:
Լսվում էին հեռու-հեռվից
Գազանների ձայներ:
Եթե հիմա հիվանդանա,
Հրդեհ ընկնի տան մեջ,
Ոչ մի բժիշկ ու մարդ չի գա,
Չի գա ոչ մի հրշեջ:
Ցուրտ է արդեն իր սենյակում,
Մրսում է նա սաստիկ.
Ջեռուցումն էլ չի աշխատում,
Որ տաքանա մի քիչ:
Հեռուստացույց միացրեց.
Ո՛չ լույս, ո՛չ էլ պատկեր:
Սրան զանգեց, նրան զանգեց,
Բայց խոսեին ովքե՞ր:



Ի՞նչ իմանա ինչ կա երկրում.
Լույս չեն տեսնում թերթեր:
Անհրաժեշտ է մի նորոգում,
Բայց ո՞վ անի այդ էլ:
Եվ լայնարձակ իր սենյակում՝
Տխուր, օտարոտի,
Նա շրջում էր ոնց վանդակում
Կամ խցիկում բանտի:
Նա վախեցավ, ճչաց սաստիկ
Ու... արթնացավ մեկ էլ.
— Վա՛հ, ես այս ի՞նչ սարսափելի
Երազ էի տեսել...

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

կություն ու երանգներ ունի, քան այն մեկ-երկու պայմանական բառը, որ մենք մեքենաբար ասում ենք այդ ժամանակ: Բարև տալով մարդուն, մեր խոսքի հնչերանգով (ինտոնացիայով), մեր ամբողջ տեսքով մենք կարծես ասում ենք. «Դուք ինձ դուր եք գալիս, ես ձեզ հարգում եմ, ես ուրախ եմ, որ ձեզ տեսա»:

Մարդկանցահա թե ինչպես էր բարևում Լենինը:

«Թեթևակի առաջ հակվելով,— Լենինի ողջունելու ձևի մասին գրել է նրա վինակիցներից մեկը,— նա պարզում էր ձեռքը, նայում դիմացինի ուղիղ աչքերին, սիրալիր ժպտալով,— և դուք էլ երջանիկ ժպտում էիք՝ նրա մեջ տեսնելով մտերիմ ընկերոջ և բարեկամի»:

«Ամեն մարդու համար Լենինն ուներ իր բարեկամական ժպիտն ու շարժումը,— մտաբերել է Կլարա Ցետկինը,— և ի պատասխան դրան միշտապես հրճվալից արտահայտություն էր երևում այն մարդու դեմքին, ում դա վերաբերում էր»:

Կարելի է ուրիշ մեծանուն մարդկանց էլ հիշել, որ օժտված են եղել բարևելու այդպիսի, թվում է, թե առօրեական, կարողությամբ: Կարելի է օրինակներ բերել: Բայց մենք օրինակներ չենք բերի: Բանը մարդկանց հետ վարվելու ձևը, բարևելու եղանակը պատճենահանելը չէ: Դա միայն հետևանքն է: Մեր բարևելն այլ բան չէ, քան մարդկանց հանդեպ ունեցած մեր վերաբերմունքի արտաքին դրսևորումը: Մենք էլ հենց այդ ենք ասում՝ մարդկանց հանդեպ ունեցած վերաբերմունքի: Մարդկանց անկեղծ ու սրտագին բարևելու համար պետք է նրանց հանդեպ անկեղծ ու սրտագին վերաբերմունք ունենալ:

Մենք բարեհամբույր վերաբերմունքի մասին ենք խոսում:

Իհարկե լավ է, երբ մարդ «ոսկի սիրտ» ունի: Բայց դա քիչ է: Քիչ է, երբ այդ սրտի տեր մարդն իրեն պահում է խոժոռադեմ ու անբարյացակամ: Եվ նա ինչքան էլ լավ բան անի մարդկանց՝ նրա պահվածքն ու խոսվածքը դուր չեն գա:

Բարեհամբույր լինելու արժեքը վաղուց է հայտնի: «Անժպիտ մարդու առաջ,— ըստ արևելյան ասացվածքի,— խանութ չեն բացի»: Հարյուրավոր տարիներ են անցել այս դարձվածքի ստեղծումից ի վեր: Բայց հիմա էլ տարբեր լեզուներով շարունակում է հնչել այդ խոսքը անժպիտ մարդու վերաբերյալ: Այդ մարդը հաջողություն չի ունենա որևէ գործ բռնելիս: Նա անդուր մարդ է՝ անբարեհամբույր մարդ:

Իսկ մենք խոսում ենք բարեհամբույր մարդու մասին: Բարեհամբույր վերաբերմունքը առաջին իսկ պահից, երբ հանդիպում եք մարդուն, առաջին իսկ խոսքերից, որ ասում եք նրան: Դուք գիտեք ինչպես են կոչվում այդ խոսքերը: Դրանք ողջույնի խոսքերն են:

*Թարգմ. Մ. ԱՅՈՒՆՑԻ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ-ՍԻՐԱՎՅԱՆԻ*





digitised by A.R.A.R.@

# Չղջիկը

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ

Քարանձավն է նրա բույնը
Եվ Չղջիկ է իր անունը,
Թևեր ունի
Նա թռչունի
Ու կարող է հանգիստ թռչել,
Բայց արի տես՝ կտուց չունի
Ու մկան պես գիտի կրծել:
Թռչունի՝ թև, մկան՝ ատամ,—
Ինքներդ ասեք՝ եղավ ո՞րը:
Նաև կույր է երկու աչքով,
Ստեղծվել է ի՞նչ հրաշքով,
Ո՞վ է դրա մեղավորը:
Մեղավո՞րը,
Հիմա ասեմ,
Մեղավոր է
Թագավորը:

Կար ժամանակ, որ չղջիկը,
Ուրախությամբ հոգին լիքը,
Պարզ երկնքի ազատ գրկում
Թռչում էր ու զվարթ երգում
Ծիծեռնակի, ծտի նման,
Երբ մի օր էլ (ախ, այդ օրը),
Թռչունների թագավորը
Տվեց սաստիկ մի հրաման.
— Ինձ պատկանող երկնքի տակ
Ով թռչում է՝ հարկ պիտի տա:—
Երբ չղջիկին հերթը հասավ,
Թևը ծալած՝ անվախ ասավ.
—Հրամանըդ ո՞նց ընդունեմ,
Եթե, նայի՛ր, կտուց չունեմ,
Նաև չունեմ մաշկիս փետուր,
Հարկ ես ուզում, խնդրեմ, դե տո՛ւր
Նախ ինձ կտուց, նաև փետուր...
Հարկ ուզելը հեշտ է այնքա՞ն.
Հերիք է, որ լինես արքա,
Բանն էլ կտուց-փետուր տալն է,
Ոչ թե տանջանք ու տուր տալն է...
Վերջում, արքա՛,
Կասեմ այսքան.
Ջուր է ամբողջ այս աղմուկը,
Ես թռչուն չեմ, տես, ես մուկ եմ,—
Ու ցույց տվեց ատամները:

Արքայական դատարանի
Կաշառակեր անդամները
Կչկչացին. «Շո՛ւտ, դո՛ւրս կորիր,
Ատա՞մ ցույց տալ... թագավորի՞ն.
Վա՜յ, հին օրենք,
Վա՜յ, լավ օրեր,
Ո՞նց գնացիք,
Ո՞նց եք կորել,
Այս ո՞ւր հասանք,
Ի՞նչ խեղճ օրի»...:
Նայեց արքան այդ բոլորին,
Որ կեղծ-անկեղծ դողում էին,
Իրենք թռչուն՝ սողում էին
Ոտքերի տակ իրենց պետի:
Բարկությունից գոռոզ արքան
Քիչ էր մնում իրեն ուտի,
Բայց դե ձեռքին ուրիշ ճար կա՞ր,
Ու թուղթ գրել տվեց արքան.
«Ո՞վ Մկների դու թագավոր,
Իմ սիրելի՛, իմ թա՜նկ քավոր,
Այսպես... այսպես՝ մի մուկ կա, որ
Քեզ կարծեմ թե հարկ չի տալիս:
Այդ ի՞նչ բան է»:
Թղթով գալիս
Ու տանում են Չղջիկ-Մուկին:
— Ի՞նչ մուկ, ի՞նչ բան... ես իմ հոգին.
Ես հո մուկ չեմ, ես թռչուն եմ,
Տեսեք, ո՛չ մազ, ո՛չ պոչ ունեմ,
Բայց դրա տեղ թևեր ունեմ,
Ձեր պահանջը ո՞նց ընդունեմ»...
Եվ այն օրից
Նոր ու նորից
Ամբողջ կյանքում հալածվելով
Երկու դաժան թագավորից՝
Քարանձավ է խեղճը մտնում
Եվ այնքան է ապրում մթնում,
Որ կույր աչքով կուրանում է,
Լույս ասածն էլ մոռանում է:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



# 14-ՐԴ ՍԵՐՈՒՆԴ

Տղան հափշտակված կարդում էր Ռոբինզոնի կյանքի պատմությունը:

— Բնի՛ր, բավական է կարդաս,— ասաց մայրը:

— Մի քանի էջ է մնացել, մայրի՛կ, վերջացնեմ, որ հետո ջոկատի անդամ դառնամ:

— Առանց Ռոբինզոնի, ջոկատի անդամ չե՞ս կարող դառնալ,— զարմանում է մայրը:

— Չեն ընդունի,— բացատրում է տղան,— այդ ջոկատի անդամ դառնալը հասարակ բան չէ... Ռոբինզոնի մասին իմանալն էլ պարտադիր է:

Հաջորդ օրերին տղան դասընկերների հետ գնաց մանկական երկաթուղի, տպարան, եղավ Աբովյան փողոցում, Կիրովի անվան մանկական զբոսայգում: Հետո նրանք ավտոբուս նստեցին ու մեկնեցին Ծաղկաձոր, Հանքավան, Ջրվեժ:

— Մայրի՛կ, դու քանի՞ տարեկան ես,— տուն դառնալով, մի օր հարցրեց մորը:

— Քառասունհինգ:

— Իսկ և իսկ մեր ջոկատի տարիքին ես:

Մայրը ծիծաղում է, իսկ տղան հարցնում.

— Դու չե՞ս լսել Աղասի Խանջյանի անվան ջոկատի մասին:

— Լսել եմ, շատ եմ լսել,— ասում է մայրը:

— Դե՛, նորի՛ց լսիր,— ասում է տղան և պատմում:

Այդ ջոկատի մեջ ընդունվողները պետք է նախօրոք ծանոթանան ջոկատի ամբողջ պատմությանը: Մինչև հիմա տասներեք անգամ փոխվել են ջոկատի պիոներները, բայց անունը մնացել է նույնը: Դու պատկերացնո՞ւմ ես. տասներեք անգամ չորրորդ դասարանցիները յոթերորդ են հասել, ջոկատի դրոշը հանձնել ուրիշներին:

Մենք տասնչորսերորդն ենք, որ շուտով 7-րդ «ա» դասարանցիներից ընդունելու ենք ջոկատը: Մենք եղանք մանկական երկաթուղու «Հայրենիք» կայարանում, որի հիմնադրման ժամանակ մեր ջոկատը 17 անգամ շաբաթօրյակ է կազմակերպել: Աբովյան փողոցի վրա մեր ջոկատի նախկին սաների տնկած ծառերի տակ պաղպաղակ կերանք: Եղանք Ծաղկաձորի «Խիզախների հովիտ» վայրում, որտեղ 1928 թվականին մեկ ամիս շարունակ վրանների տակ ապրել են Խանջյանի անվան ջոկատի պիոներները: Բայց ամենից հետաքրքիրը «Ռոբինզոնի կղզին» էր Հանքավանում:

Պիոներները հանգստացել են «Ուրախության գետափ» կոչվող վայրում: Չարաճճի տղաներին որպես պատիժ մեկ օրով ուղարկել են «Ռոբինզոնի կղզին»: Այդ կղզին ընկնողը պետք է նախօրոք կարդացած լիներ Ռոբինզոնի պատմությունը, որպեսզի կարողանար մի ամբողջ օր մենակության մեջ ապրել:

Ջոկատի քառասուն տարվա ջոկատավար ընկեր Սարգիս Մնացականյանը մեզ պատմեց, թե ինչպես այդ առթիվ «Ուրախության գետափում» բոլորն էլ սկսել են չարաճճի դառնալ, որպեսզի արժանանան կղզի «աքսորվելու» բախտին:

— Ա՛յ, հիմա նոր հասկացա, թե ինչու էիր հափշտակված կարդում այդ գիրքը,— միջամտում է մայրը:

— Այո՛, մայրի՛կ, ես դեռ շա՜տ ու շատ գրքեր պիտի կարդամ, մանավանդ՝ արկածային գրքեր: Պիտի կարդամ, որ դրանց հերոսների նման հնարամիտ դառնամ: Ընկեր Մնացականյանն ասում է. եթե մենք հնարամիտ երեխաներ չդառնանք, մեր ջոկատին արժանի չենք լինի: Նա ասում է, որ դեռ ինչե՛ր ենք անելու, գիշերները անտառում ենք քնելու, ցերեկները սար ենք բարձրանալու, ռազմական խաղեր ենք կազմակերպելու, գավաթներ ու մրցանակներ ենք շահելու:

Ես նրան ասացի.

— Ախր, ընկե՛ր Մնացականյան, մրցանակ ու գավաթ ստանալը միայն մեր ցանկության հետ չի կապված: Իսկ նա կտրուկ ասաց.

— Այո՛, մեր ցանկությունն է կարևորը: Եթե հաստատ որոշենք, ուրեմն կստանանք:

Ասաց ու մեկ ցույց տվեց այն բոլոր հուշադրոշները, գավաթները, դիպլոմները, պատվոգրերը, որոնք նվաճել է ջոկատը: Այնքա՜ն շատ են դրանք, այնքա՜ն շատ, որ մի սենյակում չեն տեղավորվում: Դրանցից մեկը, պատկերացնո՞ւմ ես, մայրի՛կ, Իսպանիայի Բարսելոնայի պիոներների ուղարկած դրոշակն էր, որ ջոկատը նվաճել է 1937 թվականին: Ամբողջ Սովետական Միության մեջ հայ պիոներներն են առաջին անգամ արժանացել այդ դրոշին: Իսկ «Պիոներսկայա պրավդա» թերթը այդ օրերին գրել է. «Սովետական երկրի պիոներնե՛ր, հետևեցե՛ք այդ ջոկատի օրինակին, սովորեցե՛ք նրանից, թե ինչպես պետք է կատարել պաշտպանական աշխատանքը»:

Տղան պատմում է և երազում, երազում է և պատմում: Ուշ գիշեր է դառնում, և նա, պատմությունը կիսատ թողած, փակում է անրջանքով լի աչքերը: Իսկ այնտեղ, Երևանի Մաքսիմ Գորկու անվան դպրոցում Խանջյանի անվան ջոկատի պիոներներ Մարինեն, Համլիկը, Սամվելը, Լևոնը, Սեդրակը, Կարինեն, Գոհարը և մյուսները՝ իրենց սիրելի ջոկատավար, հանրապետության վաստակավոր ուսուցիչ Սարգիս Մնացականյանի հետ ամեն օր նոր, հետաքրքիր ծրագրեր են կազմում ու նախապատրաստվում այն գեղեցիկ օրվան, երբ չորրորդ «ա» դասարանի փոքրիկներին ավանդական կարգով կասեն.

— Պիոներնե՛ր, պատրա՞ստ եք ջոկատը ընդունելու:

*Ն. ՄԻՐԶԱՅԵԼՅԱՆ*



digitised by A.R.A.R.@



# ԼՅՈՒԴՎԻԳ

Գերհարդ Ֆոն Բրոյնինգի կյանքի ամենանշանավոր դեպքը կատարվել է ոչ թե նրա հասուն տարիքում, ինչպես սովորաբար լինում է, և նույնիսկ ոչ ծերության հասակում, որ նույնպես պատահում է, այլ երեխա ժամանակ:

Ի դեպ, այն ժամանակ նա չէր գիտակցում կատարվածի արժեքը: Պարզապես ամեն օր, պարապմունքների ընդմիջմանը՝ ժամը տասներկուսից մինչև երկուսը և չորսից մինչև հինգը, շտապում էր իր հոր մտերիմ ընկերոջ՝ կոմպոզիտոր Լյուդվիգ Վան Բեթհովենի մոտ: Արդեն մի քանի ամիս էր, ինչ Բեթհովենը հիվանդ էր և նրա անկողնու մոտ շարունակ հավաքվում էին մտերիմներն ու բժիշկները, որոնք հաճախ էին փչացնում նրա տրամադրությունը իրենց հակասական խորհուրդներով ու պահանջներով:

Թերևս հիվանդի համար ամենահաճելին Գերհարդի հայտնվելն էր: Տղան պայծառանում էր երջանկությունից, երբ նկատում էր, որ իրեն տեսնելով՝ կոմպոզիտորի մռայլված դեմքին ուրախության ժպիտ է շողում:

Բեթհովենը պառկած էր մի մեծ սրահում, որտեղ երկու դաշնամուր կար, նվագել, սակայն, այլևս նա ի վիճակի չէր: Նրա մահճակալը ուղիղ պատուհանների դիմացն էր: Մահճակալի մոտ դրված փոքրիկ սեղանի վրա, հին, մեծ զանգի կողքին, որը հնչեցնելիս անմիջապես բոլոր կողմերից վազում էին հիվանդի մոտ, դրված էր մի տետր, մատիտ և փոքրիկ քարե տախտակ ու կավիճ: Գերհարդը գիտեր, որ Բեթհովենը վաղուց էր, ինչ գրեթե չէր լսում: Բայց առողջ ժամանակ էլ նա միշտ իր մոտ տետր էր պահում, որի մեջ գրի էր առնում զրույցները: Արդեն մի քանի հարյուր այդպիսի տետրեր էին կուտակվել կոմպոզիտորի մոտ: Գերհարդի համար ավելի հետաքրքիր էր կոմպոզիտորին ուղղված իր հարցերն ու պատասխանները գրել քարե տախտակի վրա: Հետագայում որքա՜ն էր նա ցավում դրա համար: Չէ՞ որ իր ամբողջ ուրախ շաղակրատանքը այդ մեծ մարդու հետ ջնջված էր...

Բայց, իհարկե, ոչ իր հիշողությունից:

Որքան էր Գերհարդը մտքով վերադառնում այն օրերը, աշխատում վերհիշել ամենափոքր մանրամասները: Գերհարդին Բեթհովենը անվանում էր. «Իմ արևոտ նապաստակ»: Տղան սկսեց նրա հետ «դու»-ով խոսել, ինչպես իր հոր հետ: Չքողարկելով իր հետաքրքրությունը, նա բացում էր դարակները, տակնուվրա անում գրքերը, թերթում էր զրուցատետրերը:

Բեթհովենը թույլ էր տալիս նրան ամեն ինչ:

Պարզ էր, որ տասներկուամյա տղայի համար այնքան էլ հասկանալի չէին այդ զրույցները, որոնք գրված էին հապճեպ, նա միշտ չէ, որ կռահում էր Բեթհովենի բռնկումն ու զայրույթը: Բեթհովենը ընդունակ չէր երկերեսանության, ոչ մի ուժ չէր կարող ստիպել նրան իր խղճի դեմ գնալ: Գերհարդի ուշադրությունն էր գրավել Գյոթեի խոսքերը, որոնք Բեթհովենը ընդգծել էր ու արտագրել. «Երկրորդ, երրորդ սերունդը կրկնակի, եռակի կհատուցի ինձ այն վիրավորանքների համար, որ հասցրեցին ինձ իմ ժամանակակիցները»:

Մի անգամ Գերհարդը մտավ Բեթհովենի մոտ և տեսավ մեծածավալ, լավ հրատարակված գրքեր, դրանք Հենդելի ստեղծագործություններն էին:

— Տե՛ս, թե այսօր ինչ նվեր եմ ստացել,— ասաց կոմպոզիտորը:— Ես վաղուց էի երազում դրանք ունենալ: Հենդելը ամենամեծ, ամենակարող կոմպոզիտորն է: Ապա, մի ի՛նձ տուր:

Գերհարդը սկսեց հատոր առ հատոր գրքերը տալ Բեթհովենին: Նա թերթում էր, որոշ էջերի վրա կանգ առնում և դարսում անկողնու վրա:

Գնալով Բեթհովենի վիճակը ծանրանում էր: Նա սաստիկ հյուծվել էր, քիչ էր ելնում անկողնուց, քիչ էր հյուր ընդունում: Ավելի քիչ էր օգտվում իր տետրերից: Գերհարդի հետ մենակ մնալիս տարվում էր ինքն իր մտքերով և հաճախ չնայելով նրան, կարծես ինքն իր հետ սկսում էր զրուցել: Նա խոսում էր երաժշտության մասին, որին նվիրված էր իր ամբողջ կյանքը, մեծ ներշնչանքի, հուզմունքի, անսպառ նվիրումի մասին, առանց



digitised by A.R.A.R.@

# ՎԱՆ ԲԵԹՀՈՎԵՆ

195-70

որի ստեղծագործությունը դադարում է արվեստ լինելուց և դառնում է սոսկ մեքենայական վարժություն: Հիշում էր մանկությունը, մորը, որն իր ամենամտերիմ ընկերն ու խորհրդատուն էր եղել:

Հոր մասին Բեթհովենը չէր խոսում, և Գերհարդը գիտեր, որ նրա համար ծանր է այդ կոպիտ, հարբեցող մարդուն հիշելը, որն իր որդուն փող վաստակող վունդերկինդ դարձնելու իր ձգտումով ·քիչ էր մնում շեղեր նրան իր սիրելի զբաղմունքից՝ երաժշտությունից:

Պատմում էր Վիեննայում գտնվելու առաջին օրերի մասին, հիշում էր մեծ Գյոթեի հետ ունեցած իր առաջին հանդիպումը, մի բանաստեղծի, որի ստեղծագործության առաջ միշտ խոնարհվել է:

—Մի անգամ զբոսանքից վերադառնալիս, մենք հանդիպեցինք կայսերական ողջ ընտանիքին: Մենք դեռ հեռվից նկատեցինք նրանց, Գյոթեն անմիջապես կանգ առավ ճանապարհի եզրին: Որքան համոզեցի, ինչ արեցի, չկարողացա նրան տեղից շարժել: Այդ ժամանակ ես գլխարկս քաշեցի աչքերիս, բաճկոնս կոճկեցի և, ձեռքերս մեջքիս դնելով, շիպ-շիտակ շարժվեցի դեպի շքախումբը: Իշխաններն ու պալատականները անմիջապես շարքի կանգնեցին, իսկ իշխանուհին ինքն առաջինը խոնարհվեց ու գլուխ տվեց ինձ: Ես հաճույք ունեցա դիտել նաև, թե ինչպես ամբողջ շքախումբը շարքով, ձգված անցավ Գյոթեի առջևից, իսկ Գյոթեն դեռ կանգնած էր գլխարկը ձեռքին, խորը խոնարհված: Հետո ես ոնց որ պետք էր նախատեցի նրան:

— Հասկացի՛ր, պավակս,— ասաց Բեթհովենը, ուշադիր նայելով Գերհարդին,— արքաներն իրենց ամենակարող կորությամբ ի վիճակի չեն այնպիսի մարդիկ ստեղծելու, ինչպիսին ե՛ս և Գյոթե՛ն ենք: Ուրեմն թող որ այդ պարոնները հարգեն մեր մեծությունը:

Եվ նա սկսեց Գերհարդին բացատրել, թե որն է մարդու իսկական արժանիքը, ասելով, որ ինքը մարդու մեծությունը նրա մեծահոգության և բարության մեջ է տեսնում:

Դա եղավ նրանց վերջին կրույցը...

1827 թվականի մարտի 26-ին սովորականի պես Գերհարդը Բեթհովենի մոտ էր: Հիվանդը ծանր նոպայից հետո քնած էր: Գերհարդը գիրքը ձեռքին նստեց պատուհանի մոտ:

Մեծ ժամացույցի կանգը չորս անգամ խփեց: Մեկ էլ հանկարծ կատարվեց անսպասելի մի բան. երկինքը մթնեց, ամպերը որոտացին, քամին փողոցներում հողմապտույտ առաջացրեց: Կարկուտի խոշոր հատիկները ծեծեցին ապակիները: Գերհարդը վախեցած նետվեց դեպի Բեթհովենի մահճակալը: Այդ պահին կայծակը լուսավորեց նրա դեմքը: Բեթհովենը այլևս քնած չէր: Նա մահացել էր:

Հաջորդ օրը Վիեննայի վրա շողում էր գարնանային արևը: Մարդկանց անվերջանալի շարանը շարժվում էր դեպի Բեթհովենի տունը: Գերհարդը դեռ երբեք չէր տեսել այդպիսի մեծ բազմություն: Դպրոցները փակել էին, ազգային սգո օր էր հայտարարված: Հրապարակում հավաքված ամբոխի մեջ Գերհարդը նկատեց նաև իր ընկերներին: Թափորը շարժվում էր դեպի Վերինգի գերեզմանոցը և ճանապարհին նրան էին միանում մարդկանց նորանոր խմբեր: Գերեզմանատան դարբասի առջև կարդացին հռչակավոր բանաստեղծ Գրիլպարցերի խոսքը. «Նա, ով կգա Բեթհովենից հետո, չի կարող շարունակել նրա ճանապարհը, այլ պետք է նորից սկսի, քանի որ Բեթհովենը կանգ է առել այնտեղ, որտեղ արվեստի սահմանագիծն է»:

Չանցած երեք ամիս, մեռավ նաև Գերհարդի հայրը՝ Բեթհովենի ամենամտերիմ ու բարի ընկերը:

Իսկ Գերհարդի ամբողջ կյանքը դեռ առջևում էր: Եվ նա ապրեց իր կյանքը, ոչ մի վայրկյան չբաժանվելով Բեթհովենից: Մահամերձ հիվանդ կոմպոզիտորի հետ ունեցած իր մտերմությունը ընդմիշտ մնաց նրա հիշողության մեջ, և որքան ժամանակ էր անցնում, կարծես այնքան ավելի էր մոտենում կոմպոզիտորին: Որովհետև մեծանալով և լսելով Բեթհովենի ստեղծագործությունները, սկսում էր հասկանալ նրա հզոր հոգին: Հիշում էր Բեթհովենի ասած խոսքերը և նոր միայն ըմբռնում դրանց իմաստը:

Տարիներն անցնում էին, և ծիածանի պես, որին որքան մոտենում ես, այնքան նա հեռանում է, այդպես էլ Բեթհովենը գնալով թվում էր ավելի բարձր, ավելի անհաս:

Գերհարդը գիրք գրեց Բեթհովենի մասին, որտեղ աշխատեց բաց չթողնել ոչ մի մանրամասն: Այդ գրքում պատմեց այն ամենը, ինչ տեսել էր Բեթհովենի տանը, ինչ կարողացել էր իմանալ տարբեր աղբյուրներից, որոնք մեծ ուշադրությամբ ուսումնասիրել էր: Նա խոնարհվում էր այդ մարդու կամքի և արիության առջև, մի մարդ, որն իրեն ստիպեց արհամարհել տառապանքը, տառապանքի ճանապարհով ձգտեց հասնել երջանկության: Եվ ապացուցեց թե՛ իրեն, թե՛ իր բոլոր ժամանա-





digitised by A.R.A.R.@

# ՋՐԱՍԱՄՈՒՅՐ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ



Ջրասամույր գրքային անունն է, իսկ ժողովուրդը ջրշուն է ասում: Սամույրի նման քնքուշ և թանկարժեք մորթի ունի, նաև ցեղակից է սամույրին, ուստի և ճիշտ կլինի նրան ոչ թե ջրշուն, այլ ջրասամույր կոչել:

Անունից էլ է երևում, որ դա ջրերի մեջ ապրող կենդանի է: Միայն ոչ ամեն ջրում է ապրում. նա միայն քաղցրահամ ջրեր է սիրում: Եվ որովհետև Հայաստանի բոլոր ջրերն էլ քաղցրահամ են՝ թե՛ հոսողները, թե՛ լճերը, ուստի բոլոր ջրերում էլ հանդիպում է: Պայմանով, որ ջուրը սակավ չլինի, քանի որ սա նապաստակից կրկնակի չափով խոշոր է, իսկ Ախուրյանում բռնըված մի ջրասամույր ունեցել է ռեկորդային մեծություն՝ երկարությունը (պոչը չհաշված) եղել է 83 սանտիմետր, իսկ կշիռը՝ 10 կիլոգրամ: Մի այլ պայման. ջրում բավականաչափ ձուկ պիտի լինի, որովհետև այս գազանի հիմնական սնունդը ձուկն է: Ուտում է նաև գորտեր, խեցամորթներ, որդեր, միջատներ, երբեմն՝ նաև բուսեղեն:

Արաքսի ափի եղեգնուտում թաքնված, նայում էի պղտոր ջրափոսի վրա լողացող բադերին, երբ տեսա, որ նրանցից մեկը ճղճղաց խուճապահար, թևերը թափ տվեց, որ թռչի, բայց չկարողացավ կտրվել ջրից, որովհետև ստորջրյա մի կենդանի բռնել էր նրա ոտներից և ամբողջ ուժով ցած էր քաշում: Երբ երևաց կենդանու ողորկ մեջքը, խոշոր կոտորակով կրակեցի վրան՝ և ջուրը մտնելով, վերցրի որսս. սպանվածը ջրասամույր էր: Այդ դեպքից հասկացա, որ բադերը և ջրալող այլ թռչուններ նույնպես կեր են դառնում ջրասամույրին: Կասկած չկա, որ նա հաճույքով լափում է նաև նրանց ձվերն ու ձագերին:

Ճարպիկ լողորդ է ջրասամույրը: Ափից ջրի խորքը դիտելիս երբեմն տեսել եմ, թե ինչպես մի երկար ուրվական անցավ ջրի տակով ու անմիջապես չքացավ. ջրասամույրն է, հետապնդում է ձկներին, որոնցից ավելի արագ է լողում և ջրի մեջ իր տափակ ու երկար պոչի օգնությամբ կատարում է անսպասելի ճարպիկ շրջադարձեր:

Շատ ձուկ է ոչնչացնում այդ գազանը, ավելի շատ, քան գործ է ածում իր սննդի համար, ուղղակի հաճույք է ստանում ձկներին բնաջնջելուց: Որ այդպես է, էլ ինչո՞ւ չենք բնաջնջում հենց իրեն,— կհարցնի ընթերցողը: Որովհետև նա մեր հանրապետության մեջ ամենից թանկագին մորթի ունեցող կենդանին է: Մեկ: Երկրորդ, արդեն շատ քիչ է մնացել այդ կենդանուց, ուստի նրան որպես կենդանական տեսակ պահպանելը կարևոր է: Եվ որովհետև այդ կենդանու քանակը շատ քիչ է, ձկնային տնտեսությանը տված վնասն էլ զգալի լինել չի կարող:

Որքան ջրում խիզախ, այնքան ցամաքում անօգնական է ջրասամույրը, ոտքերը կարճ են և լաստակների նման հարմարված են լողալուն, ուստի ցամաքում փորսող տալով քարշ է գալիս մի կերպ: Բայց մի բան զարմանալի է, թե ինչպե՞ս է, որ ցամաքում այդքան վատ քայլող կենդանին մի գետի ակունքից լեռներով տեղափոխվում է մյուս գետը: Օրինակ, եթե Բազարչայում ձուկը վերջանա, ջրասամույրը գետն ի վեր լողալու է մինչև նրա ակունքը, դուրս է գալու ջրից և սողալով անցնելու է Արփան Որոտանից բաժանող լեռնամատը. տեղափոխվելու է Արփա գետն այն հույսով, որ այնտեղ կգտնի իր սիրած կերը:

Ջրասամույրը ամենուրեք հետապնդվում և անխնա ոչնչաց-

---

*կակիցներին և թե՛ սերունդներին, որ դա իրեն հաջողվել է:*

*Կարո՞ղ է արդյոք ավելի մեծ վիշտ լինել, քան երբ կոմպոզիտորը զրկվում է լսողությունից: Բայց նա այդ վիճակում կարողացավ ստեղծել «Ուրախության ներբող», պսակել իր ստեղծագործությունները իններորդ սիմֆոնիայով:*

*Նա հենց այդպիսին էլ պիտի լիներ, մտածում էր Գերհարդը, իր մանկության հերոսը՝ Բեթհովենը, իրենց ընտանիքի սովորական մտերիմը չէր: Նա Վիեննայի սովորական բնակիչը չէր, և նույնիսկ ոչ սովորական մեծ կոմպոզիտոր: Նա մարդկության հավիտենական բարեկամն էր: Որքան էլ փոխվեն մարդիկ, որքան էլ փոխվեն ժամանակները, մեծ Բեթհովենը միշտ կգտնի մարդկանց սրտերը տանող ամենակարճ ճանապարհը:*

*ՄԱՐԳԱՐԻՏԱ ՅԱԽՈՆՏՈՎԱ*

*Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

վում է: Ներկայումս ամենից շատ հանդիպում է արևելյան և հարավ-արևելյան կողմից Սևանի մեջ թափվող ջրերի մեջ: Հաճախ է հանդիպում, մանավանդ, Մասրիկ գետում և Կարճաղբյուրի գետակներում: Պատճառն այն է, որ այդ ջրերով Սևանից դեպի լեռները են լողում ձկների վտառները՝ զուլալ ջրերում ձկնկիթ թափելու համար: Դե, ուր ձկան վտառն է, այնտեղ էլ՝ ջրասամույրը:

Այդ վայրերում ջրերի ափերին շավիղներ կտեսնեք, նաև այստեղ-այնտեղ միայն մեջքները կերած ձկներ: Կտեսնեք նաև, թե ինչպես շավիղը կտրվում է զառիթափի մոտ և ափը սվաղելով կենդանին է իջել ջուրը: Այդ նշաններից կարելի է հասկանալ, թե որտեղ ջրասամույր կա. այլապես թաքուն կյանք է վարում, և որքան էլ փնտրելու լինեք, ձեր աչքով դժվար թե տեսնեք այդ կենդանուն:

Ուր կան ասածս նշանները, այնտեղ էլ դրեք ձեր թակարդը, մեջը իր սիրած կերը՝ թարմ ձուկ: Հրացանով էլ կարելի է խփել, բայց խիստ թաքնված և խիստ համբերությամբ գիշերով պիտի սպասես, որ ափ դուրս գա, ապա պիտի սպասես, որ ջրից գոնե մի քիչ հեռանա և կարողանաս այնպես կրակել, որ սպանես տեղնուտեղը, այլապես վիրավոր վիճակում նետվում է ջուրը և թե՛ ինքն է անտեղի կորչում, թե՛ դու ես մնում դատարկաձեռն:

Ի՞նչ արտաքին տեսք ունի այդ կենդանին: Մարմինը երկար է ու բարակ, այսինքն հարմարված է ջրում լողալուն: Պոչը երկար է (մինչև 45—50 սմ) ու փարթամ, ծայրը՝ բարակ, հիմքը՝ լայն: Ցամաքում քայլելիս պոչը քարշ է գալիս ձյան վրա և հետք թողնում: Գլուխը սեղմված է, սրավուն, ականջները փոքր են. մարմնի առաջամասն առհասարակ հարմարեցված է ջուր պատռելուն: Մորթին քնքուշ է, մազը՝ դարչնագույն, փորի տակը ավելի բաց գույնի, քան թիկունքը: Ամառ-ձմեռ մազը գրեթե նույնն է:

Ձագ է բերում երկու տարին մեկ անգամ, և դա այդ կենդանու սակավ լինելու հիմնական պատճառներից մեկը պիտի համարել: Մյուսն այն է, որ տարեց-տարի նվազում է ձկների քանակը մեր գետերում, իսկ շատ ջրերում ուղղակի ձուկը գլխովին բնաջնջվել է, ուստի ջրասամույրը քաղցի է մատնվում և չի կարող ապրել ու զարգանալ այդպիսի գետերում:

Մեր պարտքն է՝ թե՛ պաշտպանել այդ թանկարժեք և արդեն հազվագյուտ-դարձած կենդանուն և թե՛ նրա հիմնական սնունդը՝ ձուկը, մանավանդ կարմրախայտ ձուկը, որ նրա ամենասիրած կերն է:

Այսպիսով, խոսեցինք կզաքիսների ընտանիքին պատկանող բոլոր գազանների մասին: Հաջորդ համարից կսկսենք ծանոթանալ շնազգի կենդանիներին (գայլ, աղվես, շնագայլ):



*Ջրասամույրը արևկող է արել գետի ափին։*

# ՀԻՆԳ ԱՇԽԱՐՀԱՄԱՍԵՐԻ ԱՅԳԻՆ

**1935 թվականի հուլիսի 15-ին ՀԽՍՀ Ժողկոմխորհի որոշմամբ Երևանի հյուսիս-արևելյան մասում հիմնադրվեց...**

*Բուսաբանական այգին արդեն 35 տարեկան է: Զբաղեցնում է 90 հեկտար տարածություն և ընդգրկում... հինգ աշխարհամաս: Կասկածո՞ւմ եք. իզուր, քանի որ այգու 90 հեկտարներն ունեն հինգ բաժանմունք, որոնցում խմբավորված են եվրոպական, ասիական, ամերիկյան, աֆրիկյան ու ավստրալիական բնաշխարհների հազվագյուտ ու բազմատեսակ նմուշներ: Եվ դո՛ւք, մեկժամյա զբոսանքի ընթացքում, հնարավորություն կունենաք յուրօրինակ շուրջերկրյա ճանապարհորդություն կատարելու:*

*Ձեր ճանապարհորդությունն սկսելու համար դուք պետք է անցնեք վայրի վարդենիներով պատված կով ու կանաչաթույր կամարի տակով: Հետո՝ ծառուղիներ, սիզամարգեր, ծաղկանոցներ ու ջերմոցներ: Ձեզ կդիմավորեն արևի տակ կայծկլտացող, չարաճճի, սակայն խաղաղասեր մեղուները, որոնք, չնայած աշխատանքով կլանված լինելուն, դարձյալ առիթը բաց չեն թողնում նոր այցելուներին «տնտղելու» համար: Կդիմավորեն ռուսական կեչին ու ամերիկյան հացենին, կանադական սոճենին ու մշտադալար արմավենին, կապտերանգ եղևնիներ և լատինական խրթին ան-*



digitised by A.R.A.R.@




## ՀԱՐՑԵՐ ՊԱՏԱՆԻ ԱՇԽԱՐՀԱԳԵՏՆԵՐԻՆ

*Կարդացեք տված հարցերը և մտածեք դրանց մասին: Կարող եք դրանք քննարկել նաև ձեր ընկերների հետ, չխուսափելով վիճելուց:*

*Այնուհետև կարդացեք դրանց պատասխանները, ստուգեցեք, թե ձեզանից ում պատասխանն է ճիշտ:*

## ՀԵՏԱՔՐՔԻՐ Է ԻՄԱՆԱԼ

**1. Եվրոպայի ո՞ր պետությունն է, որ սահմանակից է ինը երկրների:**

**2. Եվրոպայում ներկայումս կա՞ գաղութային տիրապետություն, ո՞րն է և ո՞ւմ է պատկանում:**

**3. Եվրոպայի ո՞ր պետությունում է գտնվում այն քաղաքը, որը տեղադրված է 118 կղզիների վրա:**

**4. Հարավային Ամերիկայի ո՞ր երկու խոշոր գետերն են, որոնց անուններով էլ կոչվում են այդ ցամաքի երկու պետությունները:**

**5. Դանիական նեղուցը չնայած Դանիայից շատ հեռու է գտնըվում, բայց կրում է այդ երկրի անունը: Ինչո՞ւ:**

**6. Ո՞րն է աշխարհի ամենախիտ բնակեցված պետությունը:**

**7. Սովետական Միության ո՞ր քաղաքներն ու բնակավայրերն են կոչվում օգտակար հանածոների անուններով և գտնվում են հենց այդ հանքերի մոտ:**

**8. Սովետական Միության ո՞ր լիճն է բաժանվում երեք մասի և դրանցից ամեն մեկը հայտնի է տարբեր անուններով:**

**9. Եվրոպայի այն ո՞ր պետությունն է, որ գտնվում է թերակղզու, իսկ մայրաքաղաքը՝ կղզու վրա: Թվարկեցեք պետության, մայրաքաղաքի, թերակղզու և կղզու անունները:**

---

*վանումներ կրող ծանոթ կամ անծանոթ ծաղիկներ: Զանձրանալու ժամանակ չեք գտնի: Կատա՞կ բան է. Երկիր մոլորակի ցամաքային տարածության մակերեսը 143 միլիոն քառակուսի կմ. է, իսկ 90 հեկտարանոց երևանյան այգին աշխարհի բոլոր բնական գոտիների մասին է պատմում...*

*...Բայց այգին միայն զբոսավայր չէ, այլ գիտա-հետազոտական ինստիտուտի կողմից ղեկավարվող խոշոր կենտրոն, որը մեծ նշանակություն ունի մեր հանրապետության ժողովրդական տնտեսության, մեր հայրենի բնաշխարհի հարըստացման և գիտության մի շարք կարևոր ճյուղերի զարգացման համար: Այստեղ է, որ գիտնականները խորանում են բազմաթիվ բույսերի կենսաբանական առանձնահատկությունների մեջ: Այստեղ են իրենց նախնական մշակումն ստանում շատ կուլտուրաներ, որոնք հետագայում լայնորեն ներդրվում են անտառապատման կամ քաղաքների ու բնակավայրերի դեկորատիվ զարդարման մեջ: Կատարվում են ուսումնասիրություններ և գործնական աշխատանքներ, որոնք խիստ օգտակար են գյուղատնտեսության զարգացման համար:*

*— Մեր այգին և մեր ինստիտուտը,— ասում է դիրեկտորի տեղակալ, կենսաբանական գիտությունների թեկնածու ընկ. Պ. Խուրշուդյանը,— իր հետազոտությունները տանում է երեք հիմնական ուղղություններով՝ դենդրոլոգիայի, ծաղկեգործության և հայկական ֆլորայի: Առաջինը զբաղվում է ծառաբույսերով, երկրորդը՝ ծաղիկներով, իսկ վերջինի հետաքըրքրության առարկան Հայաստանի բնաշխարհն է: Ուսումնասիրելով հայկական ֆլորան՝ մենք նպատակ ունենք այն հարստացնել այնպիսի բույսերով, որոնք բացակայում են մեզ մոտ: Ուստի Երևանի բուսաբանական այգին համագործակցում է Սովետական Միության 105 և արտասահմանյան երկրների կանաչ այգիների կամ համապատասխան հաստատությունների հետ:*



digitised by A.R.A.R.@

# ՏԵՐԵՎԱԹԱՓ



Աշունը վաղուց ի վեր համարվում է տխուր եղանակ, բնության մեռյալ շրջան: Սակայն բնագետի համար դա տարվա ամենահետաքրքիր եղանակն է, երբ ավելի վառ կերպով է դրսևորվում բուսական ու կենդանական աշխարհի հարմարվողական հատկությունը անբարենպաստ եղանակի նկատմամբ:

Ինչո՞ւ են թափվում տերևները: Այդ հարցին պատասխանելու համար նախ պետք է պարզել. արդյոք տերևաթափը պայմանավորված է բույսի կենսագործունեությա՞մբ, թե՞ եղանակի վատացման հետևանք է: Դրա պատասխանը տալիս է այն, որ երբ միևնույն բույսը աճեցնում ենք մշտական տաք պայմաններում (ասենք, տանը կամ ջերմոցում) աշնանը դարձյալ տերևաթափ է լինում: Ուրեմն տերևաթափը ջերմաստիճանի անկման հետևանք չէ, այլ բույսի կարգացման շրջապտույտի անհրաժեշտ փուլերից մեկը: Ձմեռն էլ մի այլ փուլ է, երբ բույսը հանգստանում է:

Եթե ամառվա վերջին, հիմքից պոկենք տերևի կոթունը, կնկատենք բջիջների հատուկ մի շերտ՝ հարթ պատերով: Այդ շերտը կոչվում է պատիչ: Տերևաթափի սկզբին խախտվում է կապը նրա բջիջների միջև, և տերևը շարունակում է ցողունից կախված մնալ միայն անոթների փնջի շնորհիվ, որոնք բնից տերևին են փոխանցում ջուր և հանքային աղեր, իսկ տերևից բնին են տանում արևի շնորհիվ գոյացած սննդարար նյութերը: Սակայն գալիս է մի ժամանակ, երբ խախտվում է բնի ու կոթունի վերջին կապն էլ. և տերևն ընկնում է:



Ինչու է տերևը դեղնում: Տերևին կանաչ գույն տվողը նրա մեջ եղած քլորոֆիլի մանրագույն հատիկներն են: Քլորոֆիլի հատիկների մեջ անօրգանական նյութերը վերածվում են օրգանականի՝ ածխաջրերի: Քլորոֆիլի հատիկն ինքն էլ քայքայվում ու նորից վերստեղծվում է, որը նույնպես կատարվում է լույսի ազդեցությամբ: Քլորոֆիլից բացի, տերևների մեջ մշտապես լինում են նաև այլ պիգմենտներ (գունանյութ)—քսանտոֆիլ և կարո-

---

Այդ համագործակցության շնորհիվ մենք կատարում ենք գիտական տվյալների և աշխատանքային փորձի փոխանակում, ստանում և առաքում ենք սերմեր, հերբարիումներ: Շատ բույսեր լավ են ընտելանում մեր պայմաններին: Միայն վերջին տարիների ընթացքում մշակվել ու ներդրվել են ամերիկյան յոթ տեսակ հացենիներ: «Հյուրընկալվել» են սեքվոյան ու սև ընկուզենին: Իսկ, ա՛յ, հոլանդական թրաշուշանների վրա լավ չեն անդրադառնում Արարատյան դաշտավայրի հողակլիմայական պայմանները, բայց բուսաբանական այգու Կիրովականի մասնաճյուղում նրանք աճում են նորմալ...

Գիտությունների թեկնածու Հակոբ Մկրտչյանը այստեղ է աշխատում այգու հիմնադրման օրից: Նա պատմում է այգու գործունեության առաջին տարիների, Կիրովականի, Լենինականի ու Սևանի մասնաճյուղերի հիմնադրման մասին:

— Ի՞նչ կցանկանայիք հաղորդել մեր ամսագրի պատանի ընթերցողներին և բոլոր դպրոցականներին,— հարցնում եմ ընկ. Մկրտչյանին:

— Թող նրանք լավ սովորեն և լավ ճանաչեն հայրենի բնությունը, պաշտպանեն ու հոգ տանեն նրան: Թող որքան հնարավոր է շուտ-շուտ այցելեն մեզ: Մենք միշտ ուրախությամբ գոհացում կտանք նրանց հետաքրքրասիրություններին:

Ես շնորհակալություն եմ հայտնում գիտնականին, ապա մի վերջին անգամ շրջում ծառուղիներով: Վերջի՞ն: Իհարկե ոչ: Սրանից հետո ես հաճույքով կգամ իմ ազատ ժամանակը հինգ աշխարհամասերի այգում անցկացնելու: Ինձ կրկին ու կրկին կդիմավորեն վայրի վարդենիներով պատված կամարը, արևի տակ կայծկլտացող մեղուները, հյուսիսի ու հարավի ծառերն ու ծաղիկները և շնորհակալ աշխատանքով զբաղված մարդիկ, որոնք հայրենասիրական մեծ գործ են կատարում:

ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ



digitised by A.R.A.R.@

տին, առաջինը՝ դեղին, երկրորդը՝ նարնջագույն: Ամռանը դեղին գունանյութը բոլորովին չի նկատվում կանաչի մեջ: Աշնանը տերևի մեջ դանդաղում և ապա ընդհատվում է քլորոֆիլի առաջացման պրոցեսը, իսկ քայքայումը շարունակվում է: Այդ պատճառով էլ տերևը կորցնում է կանաչ գույնը, և դեղինն է երևում: Ինչո՞ւ է տերևը արևոտ աշնանը ավելի շուտ կորցնում կանաչ գույնը: Դրա պատճառը լույսի առատությունն է, որի ազդեցությամբ քլորոֆիլի քայքայումն արագանում է, իսկ մռայլ եղանակին բույսը զրկված է լինում այդ հնարավորությունից:

Ինչո՞ւ է տերևը կարմրում: Աշնանը հատկապես գրավիչ է դառնում ծառերի կարմրավուն երանգավորումը: Բայց այդ գույնն ստանում են ոչ բոլոր ծառատեսակները: Ալ զգեստ են հագնում թխկին, կաղամախին, տանձենին, վայրի խաղողենին:

Այդ գունանյութը կոչվում է անտոցիան, որը շատ տարածված է բուսականության մեջ: Սա քլորոֆիլի և դեղին գունանյութի նման չի սահմանափակվում բջիջի որոշակի օրգաններում, այլ՝ լուծված է նրա մեջ: Ջերմության անկման կամ բարձրացման դեպքում ավելանում է կարմիր գունանյութի քանակը: Նույնը կատարվում է նաև այն ժամանակ, երբ ինչ-որ բանից վնասվում, քերծվում է բույսը: Քերծվածքի տեղում նախ կուտակվում են ածխաջրեր, ապա հայտնվում է կարմրավուն նյութ, որը հենց անտոցիանն է:

Ի՞նչ է պարունակում ընկնող տերևը: Պարզել են, որ հասուն տերևը ամենից շատ պարունակում է ածխաջրեր ու մոխիր: Ուրեմն, տերևաթափ լինելիս, յուրաքանչյուր տարի բույսը կորցնում է բավականին քանակությամբ սննդարար նյութեր, որոնք դեռ չէր հասցրել յուրացնել, ներծծել բնի մեջ: Սակայն դա առանձին վնաս չի բերում բույսին, քանի որ ածխաջրերը նա հեշտությամբ է վերականգնում՝ մթնոլորտային ածխաթթվի անսպառ շտեմարանի հաշվին: Ավելի դժվար է ազոտով ապահովվելը, որը պետք է ստանա հողից՝ լուծված աղերի ձևով: Այդ պատճառով էլ բույսը հաճախ է զգում ազոտի քաղց, թեև մինչ այդ տերևներից արդեն ազոտի որոշ քանակություն փոխանցված է լինում բնին:

Ընկած տերևի մեջ դարձյալ մնում են սննդարար շատ նյութեր, որոնց շնորհիվ խայալը հետագայում վերածվում է արժեքավոր պարարտանյութի:

*Լ. ԱԶԱՐՈՎ.*

*Նկ. ԹԱՄԱՐԱ ԵՐԻՑՅԱՆԻ*

*ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ*

## Ա Ս Ե Ղ Ը

Ասում են, աշխարհում կար
Մի խենթ ասեղ կռվարար.
Բոլորին նա խեթում էր,
Կսմթում ու ծակում էր,
Եվ ճչում էր ու գոչում.
— Է՛հ, ինձ ո՞վ չի ճանաչում.
Ես իմ գինը լավ գիտեմ,
Կար ու նախշի վարպետ եմ:
Բայց երբ ես կար եմ անում,
Թելն է ինձ միշտ խանգարում.
Ետևիցս քարշ գալիս
Ու ինձ հանգիստ չի տալիս:—
Մարդիկ հենց որ լսեցին,
Դարձան նրան ասացին.
— Ախար, առանց այդ թելի,
Ա՛յ ամբարտավան, պարծենկոտ,
Կդառնաս դու պողպատի
Անպետք կտոր մի ժանգոտ:

*Փոխադրությունն Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

# ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

1. Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետությունը: Այն սահմանակից է Դանիային, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությանը, Չեխոսլովակիային, Ավստրիային, Շվեյցարիային, Ֆրանսիային, Լյուքսեմբուրգին, Բելգիային և Նիդերլանդիային:

2. Ջիբրալթարն է, որը գտնվում է համանուն նեղուցի ափին և պատկանում է Մեծ Բրիտանիային:

3. Վենետիկն է: Այն գտնվում է Իտալիայում և տեղադրված է 118 կղզիների վրա: Այս տեսակետից նա յուրովի քաղաք է և նրա անունը խորհրդանշում է այնպիսի բնակավայր, որը տեղադրված է կղզիների ու ջրանցքների վրա: Օրինակ՝ Վենետիկն է հիշեցնում Ամստերդամը, և դրա համար էլ այդ քաղաքն անվանում են «Հյուսիսային Վենետիկ»:

4. Պարագվայը և Ուրուգվայը:

5. Դանիական նեղուցը գտնվում է Դանիայից մոտ երկու հազար կիլոմետր հեռավորության վրա՝ Իսլանդիայի և Գրենլանդիայի միջև: Նեղուցն այսպես է կոչվել, որովհետև ժամանակին Դանիան իշխել է այդ երկու երկրներին: Ի դեպ, մինչև այսօր էլ Դանիային է պատկանում Գրենլանդիան, իսկ Իսլանդիան առանձնացել է Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ: Քանի որ այդ երկրները պատկանել են Դանիային, դրա համար էլ նեղուցը ստացել է այդ անունը:

6. Բնակչության խտությամբ աշխարհում առաջինն է համարվում Մոնակո փոքրիկ պետությունը, որը գտնըվում է Միջերկրական ծովի ափին, Ֆրանսիայի և Իտալիայի սահմանում: Նրա տերիտորիան հավասար է մեկ և կես քառակուսի կիլոմետրի, իսկ բնակչության թիվը 24 հազար է: Այսպիսով մեկ քառակուսի կիլոմետրի վրա ապրում է 16 հազար մարդ: Մոնակոն հայտնի է խաղատներով և օվկիանոսային թանգարանով: Մոնակո են այցելում շատ տուրիստներ, որից նա մեծ եկամուտ է ստանում:

7. Ապատիտ, նիկել (Մուրմանսկի մարզում), Ազբեստ և Իզումրուդ (զմրուխտ Սվերդլովսկի մարզում), Մարգանեց (Դնեպրոպետրովսկի մարզում), Սլանցի (Լենինգրադի մարզում):

8. Չուդ լիճն է, որի հյուսիսային մասը կրում է Չուդ անունը, հարավայինը՝ Պսկովյան: Իսկ այն ջրային տարածությունը, որն իրար է միացնում այդ երկու ջրամբարները, կոչվում է Տյոպլոյե:

9. Դանիան է: Այն գտնվում է Յուտլանդիա թերակղզու, իսկ մայրաքաղաքը՝ (Կոպենհագենը) Զելանդիա կղզու վրա:

ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների դոկտոր
(Շարունակելի)

Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

№ 12 դեկտեմբեր 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*ԵԿ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15, Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05866. Պատվեր՝ 1258: Տպաքանակ՝ 64100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 15/XII 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.

digitised by A.R.A.R.@

ԻՆԴԵՔՍ՝ 77806



# ՁՄԵՌ

ՆԱԶԱՐԵԹ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Աշնան վերջի օրն անուժ
Թաց փեշերն է հավաքում,
Հանդում առվակն իր անուշ
Մեղեդին է նվագում:
Եվ ամպերը անհանգիստ
Աշնան կորուստն են լալիս,
Ու նրանց պաղ աչքերից
Ձյունե արցունք է գալիս:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@